Բարխուդարյան, Ս. Գ. (1971) *Արցախի, Շաքիի և Փառիսոսի իշխանությունները IX-X դարերում.* Պատմա-բանասիրական հանդես, № 1 . pp. 52-76.

# ԱՐՑԱԽԻ, ՇԱՔԻԻ ԵՎ ՓԱՌԻՍՈՍԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ IX—X ԴԱՐԵՐՈՒՄ

Ս. Գ. ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ

*IX դարի կեսերին արաբական խալիֆայության թուլացման և քայքայման ընդհանուր իրադրության պայմաններում, երբ բազմաթիվ նվաճված ժողովուրդներ և վարչական միավորներ (էմիրություններ) ապստամբում էին խալիֆայության դեմ, Հայաստանի հյուսիս-արևելյան երեք նահանգներում (Արցախ, Ուտիք, Փայտակարան), սրանց սահմանակից Աղվանքում տեղի ունեցան նման կարևոր շարժումներ, որոնց հետևանքով դարի վերջին այդ երկրամասերում առաջ եկան մի քանի անկախ իշխանություններ և նույնիսկ փոքր թագավորություններ։*

*Այս նորոգ քաղաքական միավորների պատկերի պարզաբանումը ստանում է հատուկ նշանակություն երկու առումով. նախ այն, թե դարավոր օտար տիրապետությունից հետո տեղական բնակչությունից ո՛ր էթնիկ խմբերն էին մնացել կենսունակ և կարողացան հիմք ծառայել քաղաքական այդ նոր միավորումներին, և ապա՝ ի՛նչ իրադրություն էր ստեղծվել հայ-աղվանական սահմանագլխային այս նահանգներում։ Բայց այս նոր իրադրությունը հստակ ըմբռնելու համար անհրաժեշտ է մի հետադարձ ակնարկով վերհիշել հայ-աղվանական սահմանների և սահմանամերձ երկրամասերի էթնիկ-ազգային կազմի պատկերը։*

*Անտիկ հույն և հռոմեական հեղինակների հաղորդածներից հայտնի է, որ Հայաստանի և Աղվանքի բնական ու մշտական սահմանը եղել է Կուր գետը, սկսած հայ-վրացական սահմանագլխից մինչև նրա արևելյան ծայրը՝ Կասպից ծովը. Կուրի ձախ ափը կոչվել է Աղվանք կամ Ալբանիա, ուր ապրում էին աղվանական ցեղեր (ըստ անտիկ հեղինակների՝ 26 և ավելի և ըստ հայկականի՝ 30-ից ավելի)։ Նշվում է, որ այդ ցեղերից մեկը, որն ապրում էր Շաքե-Նուխի հարթավայրում, մ. թ. ա. I դարում կարողացավ որոշ ցեղերի միավորել և պետություն կազմել, Կապաղակ մայրաքաղաքով։*

*Հնում Կուրի աջ ափի երկայնքով տարածված էին Մեծ Հայքի Ուտիք ու Փայտակարան նահանգները. Ուտիքն սկսվում էր Արևմուտքում հայ-վրացական սահմանից և հասնում մինչև ներկայիս Մուղանի դաշտը. սրան հաջորդում էր Փայտակարանը՝ մինչև Կասպից ծով։ Արցախը տարածվում էր դրանց թիկունքում. սկսվելով Սևանի լեռնաշղթայի հյուսիսահայաց լեռնալանջերից, այն իր մեջ էր առնում Ղարաբաղը և հասնում մինչև Արաքս գետը։ Արցախը ոչ մի կետում չէր միանում Կուր գետին և չէր սահմանակցվում Աղվանքին, հետևա-*

---

Հանգուցյալ Ս. Բարխուդարյանի հրատարակվող հոդվածը բազմաշխատ հայագետի վերջին ստեղծագործությունն է, որ նա ժամանակ ունեցավ ամբողջացնելու իր կյանքի վերջին օրերին (Խմբ.)։

*րար հայ-աղվանական սահմանային, քաղաքական ու էթնիկ խնդիրների քննարկման ընթացքում սխալվում են նրանք, ովքեր այդ ոլորտի մեջ են մտցնում նաև Արցախը։*

*Ուտիք և Փայտակարան նահանգների քաղաքական վիճակի և էթնիկ կազմի վերաբերյալ ևս գոյություն ունեն հնագույն գրավոր տեղեկություններ. ըստ անտիկ հեղինակների, որոնց տեղեկությունները գերազանցապես վերաբերում են առաջին դարերին մ. թ. առաջ, Ուտիքը միշտ էլ եղել է Մեծ Հայքի կազմի մեջ և համարվել նրա ամենաբարեբեր դաշտավայրերից մեկը։ Մովսես Խորենացին հաղորդում է, որ Ուտիքը դեռևս Երվանդունիների տիրապետության ժամանակ հայ թագավորների ձմեռային նստոցն էր, և Արտաշեսը այստեղ դիմեց ձմեռող վերջին Երվանդին հանդիպելու համար[1]։*

*Ուտիք նահանգի բնակչության վերաբերյալ աղբյուրները հայերից բացի հիշատակել են նաև ուտի և շակ կամ սակ ժողովուրդների անունները. դրանցից ուտիները բնակվում էին գերազանցապես նահանգի արևելյան կողմերում, Պարտավի շրջակայքում (որոնց անունով էլ այդ գավառը կոչվում էր Ուտի առանձնակ), իսկ շակերը՝ ներկա Կիրովաբադի շրջակայքում (դրանց անունով էլ այդ գավառը կոչվում էր Շակաշեն)։ Ստրաբոնը այդ երկու ցեղերի ծագումը համարում է սկյութական. ժամանակակից գիտության մեջ ընդունված է, որ շակերը իրոք սկյութական ցեղ են եղել, իսկ ուտիները պատկանում են կովկասյան լեզվախմբին։ Սկյութները մ. թ. ա. VII դարում հայտնվելով Կովկասում, կարճ ժամանակից հետո անհետանում են, թողնելով իրենց անունով մի քանի տեղանուններ՝ Շակաշեն, Շաքի (Շաքե) և այլն, իսկ ուտիները հարատևում են մինչև օրս էլ Կուրի ձախափնյա շրջաններում մի քանի գյուղերով։ Մինչև XIX դարի վերջն էլ Ուտիք նահանգում կային երկու գյուղեր, որոնց հայախոս բնակչությունը հիշում էր իր ուտիական ծագումը, դրանցից մեկը Գանձակի մոտ գտնվող Սարով գյուղն էր, մյուսը՝ Կրղեն, որը գտնվում էր Թոուզի շրջանում։*

*Այլ քաղաքական և ազգագրական անցյալ է ունեցել Փայտակարան նահանգը։ Համաձայն Ստրաբոնի հնագույն և ստույգ տեղեկության՝ այդ նահանգը գրավել է Արտաշես թագավորը Մարաստանից և կցել Հայաստանին մ. թ. ա. II դարում. այդ մարական մեծ երկրամասում ապրելիս են եղել իրանական ծագում ունեցող բազմաթիվ ցեղեր, ինչպես և հայեր ու աղվաններ։ Սրանցից բացի Ստրաբոնը հիշատակում է գելեր, կադուսներ, ամարդներ, վիտիներ, անարիակներ և այլ ցեղեր[2]։*

*Ուտիքն ու Փայտակարանը ինչպես Երվանդունիների, այնպես էլ Արտաշեսյան և Արշակունի թագավորատոհմերի համար եղել են ձմեռանոցային վայրեր և պաշտպանական կարևոր կենտրոններ՝ հյուսիսային Կովկասից եկող ռազմիկ ցեղերին դիմադրելու համար։ Դեռևս Տիգրան Մեծը այդ նահանգներից յուրաքանչյուրում շինել էր մի-մի քաղաք և կոչել իր անունով՝ Տիգրանակերտ։ Ագաթանգեղոսը Տրդատի և Լուսավորչի գործունեության առթիվ հիշատակում է Փայտակարան քաղաքը. «մինչ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց»[3]։*

---

1 «Մովսեսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1913, էջ 169։
2 «Ստրաբոն. քաղեց և թարգմանեց Հ. Աճառյանը», Երևան, 1940, էջ 35։
3 «Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1909, էջ 439։

Սահմանամերձ նահանգների այս կացությունը տևեց այնքան ժամանակ, քանի գոյություն ուներ անկախ և ուժեղ հայ պետականությունը, բայց նրա թուլացման շրջանում Պարսկաստանը բռնությամբ անջատեց դրանք Հայաստանից և միացրեց իրեն հլու Աղվանքին։ 338 թ., հայոց Տրդատ թագավորի դեմ ապըստամբած նրա ազգակից Սանատրուկին տալով թագավորի տիտղոսը, պարսիկները ստեղծեցին մազքութների պետությունը, որը նաև Աղվանից է կոչվում։ Այդ նոր թագավորության մայրաքաղաքն սկզբում հենց Փայտակարանն էր, բայց հետո տեղափոխվեց հյուսիս՝ մազքութների բուն միջավայր Չողա քաղաքը։ Էլ ավելի ուշ, երբ հայ պետականության վերացումով հյուսիսային լեռնաբնակներից պաշտպանվելու ամբողջ հոգսը ծանրացավ Պարսկաստանի ուսերին, Պարսից Պերոզ թագավորը ռազմա-քաղաքական նկատառումներով կառուցել տվեց Պարտավ քաղաքը և 462 թ. Չողայից այնտեղ տեղափոխեց Աղվանից արքունիքը (ուր այն մնաց մինչև թագավորության վերացումը՝ 510 թ.), և վերջապես՝ 551 թ. Պարտավ տեղափոխվեց նաև Աղվանից կաթողիկոսությունը։

VII դարի «Աշխարհացույցը», որը Հայաստանի բաժանումից հետո եղած դեպքերի ամենամոտիկ և իրական արտահայտիչն է, Աղվանքի հին ու փոփոխված վիճակը գծել է երկրամասին նվիրված հատուկ գլխի մեջ այսպես.

«Յաղագս Աղուանից. Աշխարհ Աղբանիա, այսինքն՝ Աղուանք, յելից Վրաց, յերի Սարմատիոյ առ Կաւկասով, մինչև ի Կասբից ծովն եւ ցՀայոց սահմանն, առ Կուր գետով, թէպէտ եւ աստի ցԿուր զամենայն սահմանս հանեալ է ի Հայոց։ Բայց մեք ասասցուք զբուն աշխարհն Աղուանից, որ ընդ մէջս է մեծի գետոյս Կուրայ եւ Կովկաս լերինն»։

Ապա իր իսկ բնորոշած բուն Աղվանքի (Կուրի ձախ ափի) բոլոր գավառները իրենց տեղադրությամբ թվելուց հետո «Աշխարհացույցը» վերադառնում է ոչ բուն Աղվանքին, հատուկ բնորոշմամբ՝ «եւ այլ քսան գաւառս զորս ի Հայոց հանեալ է՝ Շակաշէն, Գարդման, Քուստի-Փառնէս, Կողթ, Աղուէ, Տուս-Քուստակ, Ուտ-Պարսեան, Մեծ-Կուենք, Մեծ-Իրանք, Պիանք, Հարճլանք, Պարսականք, Մուխանք, Վայկունիք, Փոքր Հաբանդ, որ է Սիսական ի Կոտակ, Ռոտբստակ, Բերդաձոր, Տոփ, Առան-ռոտ, մինչեւ ի խառնումն Երասխայ ի Կուր գետ»[4]։

Պարզ ու առարկայական այս նկարագրությունը վերաբերում է Ուտիքին, Արցախին և Փայտակարանի արևմտյան մասը կազմող գավառներին՝ մինչև Արաքս։

Մեր նոր պատմության ռահվիրա Չամչյանը խնդիրն ամփոփում է այսպես՝ «Աղուանից աշխարհ. կրկին առմամբ յիշատակի սա ի գիրս մեր, մի՝ փոխանակ այնր աշխարհի, որ է ընդ մէջ Կուր գետոյ եւ Կասպից ծովու՝ մինչ ի Դարբանդ. եւ սա կոչի Աղուանք Շիրուանայ կամ Շիրուան... երկրորդ ի մասնաւորի փոխանակ այսր մասին Հայաստանի, որ պարունակէ յինքեան զերիս աշխարհս, այսինքն զՈւտի, զԱրցախ եւ զՓայտակարան եւ սա կոչի յատկապէս Աղուանք Հայոց»[5]։

• • •

Մերձկուրյան այս շրջաններում գրեթե չորս հարյուր տարի տևած պարսկական և արաբական տիրապետությունը նշանավորվել է բնիկ ժողովուրդների

---

[4] Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», Երևան, 1963, էջ 105 (հատվածի դեմ տրված է նաև աշխարհաբար թարգմանությունը)։

[5] Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, մասն Դ, Վենետիկ, 1784, էջ 131։

բանի հավատափոխության և ուծացման քաղաքականությամբ։ Դիմագրավելով այդ քաղաքականությանը և պայքարելով պարսիկների ու արաբների կողմից ստեղծված օտարացեղ Լթնիկական կազմ ունեցող գաղթօջախների բնատիրական ձգտումների դեմ, տեղաբնիկ հայ տարրը պահպանում էր ազգային իր դիմապատկերը։ Այս մեր դիտողությունն իր հիմնավորումը կստանա, երբ հաջորդ շարադրանքով ծանոթանանք խալիֆայության քայքայման շրջանում այդ վայրերում տեղի ունեցած իրադարձություններին։

Հակաարաբական շարժումների գլխավոր և հուժկու ալիքը խուրամյաններ ապստամբությունն էր Բաբեկի գլխավորությամբ, IX դարի սկզբին, որը կրոնական քողի տակ Փայտակարանից տարածվեց, ընդգրկելով ընդարձակ շրջաններ, իր մեջ առավ Ուտիքի և Արցախի կենսունակ ուժերին ևս։

ԵՍԱՅԻ ԻՇԽԱՆ ԱՐՑԱԽԻ

Մ. Կաղանկատվացու շարունակողը հիշատակում է, որ 830-ական թթ. մոտ Բաբեկը, հարկադրված հեռանալով Սյունիքից և Արցախից, մի խոշոր զորաբանակ թողնում է Արցախի Ամարաս գավառում, Ռոստոմ զորավարի գլխավորությամբ պատվիրելով, որ տեղացիների նկատմամբ հաշտ քաղաքականություն վարի։ Բարոյալքված բանակը, սակայն, սկսում է խժդժություններ ու թալան, այդ նպատակով էլ նա հարձակվում է Գորողու բերդում ամրացած հայերի վրա, որոնք խանգարում էին իր գործողություններին։ Բերդում ամրացածները, Եսայի իշխանի գլխավորությամբ, հարձակվում են Ռոստոմի բանակի վրա և ջարդում ու հալածում նրան։ Դրանից հետո Եսային տիրում է Արցախի մեծ մասին՝ Բերդաձոր, Վայկունիք, Սիսական, Հաբանդ, Ամարաս, Պարզկանք, Մխանք և Ուտիք նահանգի Տրի գավառներին[6]։ Այս քաջամարտիկ իշխանը այնուհետև դիմադրում է արաբական իշխանությունների կամայականություններին։ Արաբական խարխլված իշխանությունը ամրացնելու նպատակով ուղարկված Բուղան, հասնելով Պարտավ, որոշում է վերջ տալ հայ իշխանի դիմադրությանը, իսկ Եսային էլ իր կողմից, ըստ Թ. Արծրունու վկայության, «Հրաման ետ բոլոր աշխարհին իւրոյ ելանել ունել զլեռնակողմն»[7]։ Սա արդեն քթիչ առանձնացած լեռն է, նրա գագաթին գտնվող հինավուրց անմատչելի բերդը։ Փորձված Եսային մերժում է Բուղայի հորդորները հանձնվելու վերաբերյալ և սկսվում է պատերազմը, որի մանրամասնությունները նկարագրել է Թ. Արծրունին։ Բուղայի զորքերը, պաշարելով բերդը, ամիսներով այն գրավել չեն կարողանում, 28 անգամ հերոս ապստամբները ետ են մղում արաբների հարձակումները. ի վերջո Բուղան առաջարկում է հաշտություն՝ պայմանով, որ խալիֆն ինքը որոշի վեճը. Եսային իջնում է բերդից և արաբական պատվո պահակի ուղեկցությամբ մեկնում Բաղդադ, այնտեղ էլ պատիվների է արժանանում, բայց... այլևս չի վերադառնում։ Թովմա Արծրունուց բացի մեր պատմիչներից շատերն են անդրադարձել այս դեպքերին. օրինակ՝ Դրասխանակերտցին գրում է. «Եւ ապա եւս իշխանն Աղուանից Եսայի ննգապատիր լեալ առ ի նմանէ ըմբռնի ի ձեռն նորա Բուղայի հանդերձ համազգեօք իւ.

6 «Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի», Թիֆլիս, 1913, էջ 376։

7 «Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն Տանն Արծրունեաց», Թիֆլիս, 1917, էջ 289։

բովք»[8]։ Եսայի իշխանի հերոսական ապստամբության մասին հիշատակել են նաև արաբացի մատենագիրները։ Այդ աղբյուրների, ինչպես և արձանագրությունների և տեղագրական նյութերի հիման վրա հնարավոր է մասամբ վերականգնել Եսայի իշխանի տոհմագրությունը և իշխանության սահմանները։ Եսայի իշխանին Տաբարին կոչում է Իսայ իբն Յուսուֆ իբն Ստեփանոս, իսկ հաճախ էլ Եսային կոչվում է Ապու-Մուսե։ Ըստ այդ անունների ստացվում է հետևյալ տոհմաշարքը. Ստեփանոս, Հովսեփ, Եսայի, Մովսես[9]։

Աղբյուրները Եսայիից բացի համառոտակի տեղեկություն են պարունակում նաև նրա հոր՝ Հովսեփի մասին, ըստ որում հայտնի է, որ նա քահանա է եղել (Թ. Արծրունին գրում է. «Ապումուսէ, որ ճանաչէր երիցու որդի») և ամուսնացած Ուտիքի իշխան Ստեփանոսի քրոջ հետ, որով Եսային լինում է քրոջ որդին այն Ստեփանոս-Աբլասադի, որ ննենգորեն արաբների ձեռքը մատնեց Բաբեկի հետ փախած նրա եղբայր Աբդալլահին։ Տոհմի թված անդամների ժամանակագրությունից միայն Եսայու անկման թիվն է հայտնի, որը հավանաբար 852 թ. գնաց Բաղդադ. Եսայուց հետո պիտի տիրեր հոր փոխարեն նրա ավագ որդի Մովսեսը։ Վերջինիս և նրա հաջորդների մասին եղած սակավաթիվ տեղեկությունները պահպանվել են վիմական արձանագրությունների մեջ, այդ պատճառով էլ նախ ծանոթանանք տոհմի կենտրոնատեղերում պահպանված հուշարձաններին։

Վերևում հիշատակեցինք այն գավառների անունները, որոնք անցան այս տոհմի իշխանության տակ խուրամյաններին դուրս քշելուց հետո։ Դրանցից բացի հիշատակված են երկու բերդերի անուններ, որոնցից մեկում, որ կոչվել է Գոռոզու, արցախցիները դիմագրավեցին Բաբեկի զորավար Ռոստոմին, և մյուսը՝ Քթիշ բերդը, ուր Եսային հերոսաբար դիմադրեց Բուղայի բանակին։

Քթիշ բերդի տեղը լավ հայտնի է, այն գտնվում է ներկայիս Հադրութի շրջանի Տող, Տումի և այլ գյուղերի արանքում վեր խոյացող անտառապատ լեռան գագաթին, մինչև օրս էլ ընդարձակ տարածության վրա մնում են Քթիշ բերդի հաստահեղույս պատնեշները, իսկ ներսում՝ բազմաթիվ բնակարանների և մի փոքր եկեղեցու ավերակները (սրա շրջակայքում կան XIII և հետագա ժամանակների մի քանի մանր արձանագրություններ)։ Բերդից հարավ, մի ընդարձակ սարահարթի վրա, կանգնած են Գտչա վանքի շինությունները՝ կառուցված XIII դարում։ Բայց հերոս Եսայի իշխանի բնակավայրը եղել է Բերդասարի թիկունքում գտնվող և Իշխանաձոր կոչվող վայրի Տումի գյուղը։ Այս գյուղի հանդեպ, մի ձորակով բաժանված հարթության վրա, գտնվում են եկեղեցի, գերեզմանատան ավերակներ, որոնք կոչվում են բազավորի պալատ, մի մեծ գերեզմանաքար, որը կոչվում է բազավորի գերեզման, իսկ ձորամիջում (գյուղի և հարթավայրի արանքում) մի հին և ճարտարապետորեն ձևավորված աղբյուր, որը կոչվում է բազավորի աղբյուր (սրա վրայի շինությունն այժմ քանդված է)։ Եկեղեցին, որ կոչվում է Կարմիրեղցի, մի թաղակապ փոքր շենք է, ծածկի մեծ մասն այժմ փլված, պատերը շինված են ճեղքված քարերով,

---

8 «Հ. Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ 127—128։ Տե՛ս նաև «Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական», Մոսկվա, 1861, էջ 111։ «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական», Պետերբուրգ, 1885, էջ 107։

9 Չենք անդրադառնում Մ. Բարխուդարյանցի տոհմագրությանը (տե՛ս «Պատմություն Աղվանից», հատ. Ա, Թիֆլիս, 1900, էջ 102)։

*եկեղեցու արևմտյան պատի նեղ լուսամուտի գլխին շինված միակտուր քարե պսակի վրա պահպանվել է հետևյալ կարևոր արձանագրությունը.*

Ի:ՆԽԹ: (1000) թվ. Հայոց եւ ի թագաւորութեանս տն. Գագիկա
որդո Մուսէի, ես Սոփի դուստր Մուսէի շինեցի տուն
այ. ի փրկութիւն հոգո իմո եւ ծնողաց իմոց:

*Երկրորդ բերդը, որը հիշատակվում է Մ. Կաղանկատվացու կողմից Բաբեկի զորավար Ռոստոմին հայերի կողմից տրված դիմադրության առթիվ, պատմագիրը կոչում է Գորոզու Այս բերդը տեղագիր Մ. Բարխուդարյանցը նույնացնում է այժմյան Մարտունու շրջանի Գիշի, Մշկապատ և Գյունե-Ճարտար գյուղերի արանքում բարձրացող Ղալին-խութ կոչվող գագաթի գլխին գտնվող ավերակների հետ, սակայն որևէ շոշափելի փաստ չկա այդ կարծիքի հիմնավորման համար։ Մենք կարծում ենք, որ հին Գորոզու բերդը այժմյան Հադրութի շրջանի Մեծ Թաղլար գյուղից հարավ գտնվող լեռնաբազուկի վրա գտնվող Ջուխտ Պռավածառ կոչվող հին բերդատեղին է, որի մեջ կան նաև հին եկեղեցիների ավերակներ և խաչքարեր՝ Եսայի իշխանի տոհմի հետ սերտորեն կապված արձանագրություններով։ Մեր հավաքած յոթ արձանագրություններից վեցը IX—X դարի են. դրանցից երկուսի մեջ հիշատակված են Ուսեփ երեցի անունը, որը Եսայի իշխանի հայրն է անշուշտ, իսկ ամենաընդարձակ արձանագրության սկզբի մասում կարդում ենք.*

ՆԽԶ: (997)
Սուրբ Պաւղոս. յամս աստուածապատիւ եւ հոգեւոր
տեառն Յովհաննիսի Ամարասա եպիսկոպոսին եւ պետու-
թեան տեառն Գագիկա...

*Այս Գագիկն, անշուշտ, Տումի գյուղի արձանագրության մեջ հիշատակված Գագիկ թագավորն է։*

*Այսպիսով տեսնում ենք, որ Եսայի Ապու-Մուսեից մոտ 140 տարի հետո հիշատակվում են նրա տոհմի անդամները՝ արդեն թագավոր կոչումով։ Շուրջ մեկուկես հարյուրամյակի այդ բաց տարածությունը լցնելու համար կա մի անուն, որը հիշատակված է Ստ. Օրբելյանի մոտ։ Պատմագիրը Սյունյաց եպիսկոպոսանիստ Տաթևի վանքի մայր տաճարի ավարտման և մեծ շուքով օծման 906 թ. տեղի ունեցած հանդեսի նկարագրության մեջ թվարկում է ամբողջ Հայաստանից ժամանած մեծապատիվ հյուրերի անունները. դրանք են՝ Սմբատ թագավոր և Հովհաննես կաթողիկոս, Աղվանքից ժամանած Գրիգոր, Եսայի և Ատրներսեհ իշխանները՝ իրենց արքեպիսկոպոս Սիմեոնի գլխավորությամբ[10]։ Նկատի ունենալով հանդիսությունների բարձր մակարդակը և Աղվանքի երկու մասերում տիրող իշխանների իրական վիճակը, կարծում ենք, որ հիշատակվածներից Եսային պիտի լինի Եսայի Ապու-Մուսեի թոռը և Ատրներսեհը՝ Համամ թագավորի որդին և ժառանգը։ Այսպիսով կստանանք հետևյալ շարքը.*

1. Յովսեփ քահանա, ամուսնացած Ստեփանոս Արլասաղի քրոջ հետ.
2. Եսայի Ապու-Մուսե, գերի տարված 852 թ.
3. Մուսե, որդի նախորդի.
4. Եսայի, թոռ Եսայի Ապու-Մուսեի, հիշված 906 թ.
5. Գագիկ թագավոր, որդի նախորդի, 997—1000 թ.: Քույրն է՝ Սոփի, հշվ. 1000 թ.

10 *Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 234։*

*Այսպիսով Արցախ-Ղարաբաղի քաջարի Եսայի իշխանը, որ դիմագրավեց ու հաղթեց ամենազոր Բուղային, հիմք էր դրել մի ուժեղ իշխանության, որն իրենից հետո առնվազն 150 տարի պահպանում էր Հայաստանի արևելյան լեռնաստանը՝ Արցախ նահանգի այն մասը, որը հետագայում Ղարաբաղ անունը ստացավ։*

ՀԱՄԱՄ ԲԱԳՐԱՏՈՒՆՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

*Արաբական խալիֆաթի թուլացման պայմաններում Բագրատունյաց նախարարական տոհմը խիստ հզորանալով սկսեց առաջնակարգ դեր խաղալ ամբողջ Անդրկովկասում. աղբյուրները նշում են, որ Սմբատ Բագրատունու որդի Աշոտ Բագրատունին 862 թ. խալիֆաթից «իշխանաց իշխան» կոչումն էր ստացել և ըստ Թ. Արծրունու կառավարում էր նաև Վրաստանն ու Աղվանքը*[11]*։ Եթե նույնիսկ այդ կոչման իրավական կողմը ձևական բնույթ ունենար, միջնադարյան ժառանգական իրավունքով այն իրական էր, քանի որ այդ ժամանակ թե՛ Վրաստանում և թե՛ Աղվանքում իշխում էին Բագրատունյաց ճյուղերը, որոնց մեջ տոհմապետության կարգի ավագը Հայաստանում տիրող Բագրատունիներն էին*[12]*։*

*Երբ 885 թ. Աշոտ Բագրատունին պաշտոնապես հռչակվեց Հայաստանի թագավոր, նույն ժամանակներում Աղվանքում թագավոր դարձավ Համամ Բագրատունին։ Սրա մասին մեր մատենագրության մեջ կան մի շարք տեղեկություններ. Մխիթար Այրիվանեցին որոշակի ասում է. «*Համամ, որ եւ Յովհաննէս Բագրատունի»*. իսկ Կաղանկատվացու գործի շարունակողը գրում է.* «Ապա բարեպաշտն Համամ նոյնպէս զկործանեալ թագաւորութիւն տանն Աղուանից նորոգէր, որպէս Աշոտ Բագրատունի զՀայոց թագաւորութիւն. այսք ի միում ժամանակի գործեցան»[13]:

*Փորձենք պարզել Աղվանքի այս Բագրատունի թագավորության տոհմագրությունը և նրա իշխանության տեղագրությունը։ Այս տոհմը ոչ Համամով է սկսվում և ոչ էլ նրանով պատմության ասպարեզ իջնում. սկզբնաղբյուրներից հայտնի է դառնում, որ մինչև Համամի թագ ստանալը նրա հայր Սահլը արդեն Աղվանքում գլխավոր քաղաքական դերակատարն էր, իսկ պապի միայն անունն է հայտնի, որ էր Սմբատ՝ որդի Աշոտի։*

*Տոհմի ծագման վերաբերյալ կա երեք կարծիք։ Դրանցից առաջինը Մ. Կաղանկատվացու շարունակողինն է. սա, խոսելով Համամի հայր Սահլի պատերազմական մի հաջողության մասին, նրան համարում է Արցախի Եռանշահիկ կամ Առանշահիկ տոհմի շառավիղ.* «զնախնական ազգս Հայկազնեայց զԱռանշահիկս»[14]*։ Երկրորդ կարծիքի հեղինակը Ղ. Ալիշանն է, որն իր կազմած Բագրատունյաց տոհմածառի վրա Սահլին համարել է Բագրատունի իշխան Սմբատ Խոստովանողի որդին*[15]*։ Այս կարգով էլ Հ. Աճառյանը նշել է Սահլին իր անձնանունների բառարանում*[16]*։ Ավելի հանգամանալից, հեղինակավոր և ճշմարտապատում խոսքը պատկանում է Ադոնցին, որը խորամուխ լինելով սկզբնաղ-*

---

[11] *Թ. Արծրունի, էջ 335։*

[12] *Ն. Ադոնց, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 125։*

[13] *Մ. Կաղանկատվացի, էջ 383։*

[14] *Նույն տեղում, էջ 196։*

[15] *Ալիշան, Շիրակ, Վենետիկ, 1881, էջ 96։*

[16] *Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Դ, Երևան, 1948, էջ 374։*

*բյուրների մեջ, ինչպես և հենվելով Մարկվարտի «Բագրատունյաց ճյուղագրությունը» նշանավոր աշխատության վրա[17], գծում է Աղվանքի Բագրատունիների ծագման հետևյալ պատկերը.*

*Աշոտ Մսակերի պապ Աշոտը, որը Մրվան ոստիկանի կողմից նշանակված էր Հայաստանի կառավարիչ, միացած արաբներին, դիմադրեց Գրիգոր Մամիկոնյանին Տարոնի ապստամբության ժամանակ. հետագայում ձերբակալվեց և կուրացվեց Գրիգորի կողմից 748 թ. և մեռավ Դարույնք ավանում 761 թ.։ Այս կույր կոչված Աշոտի երեք եղբորորդիները հեռանում են Տարոնից և գիմում դեպի Վրաստան. նրանք ներկայանում են վրաց թագավոր Արչիլին, որն այն ժամանակ գտնվում էր Կախեթում։ Արչիլը նրանց սիրով է ընդունում և կալվածքներ հատկացնում Շաքե-Նուխիի շրջանում, Այրի գետակի ավազանից սկսած մինչև Ալազանի վերին հոսանքում գտնվող Գավազնի քաղաքը (ներկա Բելավիի մոտ)[18]։ Դեպքը տեղի է ունեցել 775 թ.։ Բագրատունի եղբայրների Վրաստան գալու և հաստատվելու փաստը հիշատակում են գլխավորապես վրացական աղբյուրները. «Քարթլիս Ցխովրեբայում» կարդում ենք. «Եկին ի Տարոնոյ եղբարքն երեք եւ բնակեցան մինչև զԳաղգաղ հրամանաւ Արչիլին»[19]։ Նույն աղբյուրի Վախթանգ Գորգասալի պատմության մասում կարդում ենք. «Ատրներսեհ կույրի եղբոր որդիք՝ երեք եղբայրները, որոնք այրեցին հորեղբոր աչքերը, Տարոնից էին եկել Շաքի ու հաստատվել այնտեղ Արչիլի հրամանով, քանի որ Կովկասի բոլոր ծայրերը Մանի կողմից անբնակ էին դարձել... և երեք եղբայրները հաստատվեցին մինչև Գուղդուղ (Գուլգուլ)»[20]։*

*Շաքե երկրամասի տեղագրությանն Ադոնցից բացի անդրադարձել են շատ արևելագետներ. հիշատակենք դրանցից միայն նշանավոր Մինորսկու գրածը.* «Կապաղակից արևմուտք տարածված էր ավելի կարևոր իշխանություն՝ Շաքեն, հայերեն Շաքի, որը հին Աղվանքի մասն էր։ Նա տարածված էր Կախեթից արևելք, գլխավորապես Ալազանի արևելյան վտակի երկարությամբ»[21]։

*Շաքիի տեղագրության վերաբերյալ գիտնականների այդ եզրակացությունները հիմնված են բազմաթիվ սկզբնաղբյուրների, հատկապես արաբական հեղինակների հաղորդումների վրա, որոնցից նշենք հետևյալները. X դարի հեղինակ Մուկադասին Աղվանքի գլխավոր քաղաքների շարքի մեջ արևելքից արևմուտք, հիշատակում է՝ Բաքու, Շաբրան, Կաբալա, Շաքի[22]։ Իբն Հաուկալը X—XI դարերի Աղվանքի քաղաքների շարքը մոտավորապես նույն կերպ է դասավորում՝ Շամախի, Շարվան, Աբխազ, Շաբիրան, Կաբալա, Շաքի[23]։ Մասու-*

---

17 *«Հայ Բագրատունյաց ճյուղագրությունը, ծանոթություններով, գրեց պրոֆ. Հ. Մարկվարտ, գերմաներենից թարգմանեց Հ. Հապոզյան», Վիեննա, 1913 (գրքի երկրորդ մասը՝ վրացական Բագրատունյաց ծագումը)։*

18 *Ն. Ադոնց, Բագրատունյաց փառքը (տե՛ս նշվ. աշխ., էջ 81)։*

19 *«Քարթլիս Ցխովրեբայի կամ վրաց պատմության հին հայերեն թարգմանությունը, լույս ընծայեց Ի. Աբուլաձեն», Թիֆլիս, 1953, էջ 199։*

20 *Լ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, Երևան, 1934, էջ 196։*

21 В. Минорский, История Ширвана и Дербента X—XI веков, М., 1963, *էջ 116։*

22 Н. А. Караулов, Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане, «Сборник материалов по описанию местностей и племен Кавказа», вып. XXIX, Тифлис, 1901, *էջ 8—9։*

23 Н. А. Караулов, *նշվ. աշխ.*, вып. XXXVIII, Тифлис, 1908, *էջ 92։*

դին (X դար) Աղվանքի նկարագրությունը սկսում է արևմուտքից՝ Վրաստանի սահմանից և գրում է. «Ծանարների թագավորության մոտ գտնվում են շաքեցիները», որ ասել է սահմանակից է Կախեթին։ Իբն Հաուկալը Շաքին տեղադրում է Կուրի և Շիրվանի արանքում և երկրի տեր է անվանում Համամին։

Հիշատակենք նաև արաբական աղբյուրներից ավելի հին մեր «Աշխարհացույցը», որն Աղվանից երկիրը նկարագրում է սկսելով Վրաստանի սահմանից։ Որպես առաջին գավառ հիշատակում է Եղնին՝ Աղվան գետի հովտում, ապա Կամբեճանը՝ Իորա գետի հովտում, այնուհետև. «Եւ Բեղ գաւառ՝ առ Կաւկասաւ, Է յելից նորա Շաքէ և Գետառու գետ»[24]։

Կան նաև այլ սկզբնաղբյուրներ, որոնք միաբերան վկայում են, որ Շաքի գավառը, համանուն քաղաքով, ճշտորեն համընկնում է ներկայիս Շաքի-Նուխի գավառի և քաղաքի հետ։ Ինչ վերաբերում է Շաքի քաղաքի հնությանը, ապա արաբական հեղինակները (օրինակ՝ Բելադորին) նրա հիմնադրումը, Փայտակարանի, Պարտավի և Կապաղակի հետ միասին, վերագրում են պարսից թագավոր Կավատին (489—581)։

Այս նոր միջավայրում հաստատված Բագրատունիները շատ շուտով գերակշռող դիրքի հասան և Աղվանքի փաստական տերը դարձան՝ հասնելով մինչև թագավորական գահի և Շաքի-Նուխի քաղաքը դարձնելով իրենց ոստան. այդ են վկայում տոհմի գահերեցների մասին եղած պատմական փաստերը։

Գծենք այժմ Բագրատունի այս իշխանական տոհմի անդամների հաջորդականությունը, համառոտակի անդրադառնալով յուրաքանչյուրի գործունեությանը։

**Սմբատ Բագրատունի**: Տեսանք, որ Տարոնից երեք Բագրատունի եղբայրներ եկան և Արշիլ թագավորի կողմից ստացան Շաքի-Նուխի շրջանը որպես կալվածք։ Այդ եկվոր եղբայրներից ոչ մեկի անունը, սակայն, չի հիշատակված վրաց աղբյուրների մեջ. դրանցից մեկի որդին՝ Սահլ անունով, շատ շուտով (այն է՝ IX դարի երկրորդ տասնամյակում) այնքան նշանավոր քաղաքական գործունեություն ունեցավ, որ բազմիցս հիշատակվել է հայ և արաբացի մատենագիրների կողմից՝ բարեբախտաբար իր հոր անվան հետ միասին, որով և պարզվում է եկվոր եղբայրներից այն մեկի անունը, որը նոր միջավայրի իշխանության տոհմապետը դարձավ։

Արաբական սովորությամբ ազգանվանը փոխարինում է հոր անունը. և Սահլը այդ պատմագիրների մոտ կոչվում է Սահլ իբն Սմբատ կամ Սահլ իբն Շամբատ ձևերով, այսինքն Սմբատի որդի Սահլ։ Եվ իր ժամանակին ընդհանրացած այդ ձևին հետևելով, մեր պատմագիր Թ. Արծրունին նրա մասին գրում է. «Սահլ Սմբատայ որդի, Շաքէոյ տէր, որ զԲաբանն կալաւ»[25]։

Սմբատի մասին մի վերջին տեղեկություն էլ հաղորդում է արաբ մատենագիր Տաբարին, որ 852 թ. Բուղայի կողմից գերված և Բաղդադ քշված իշխանների ցանկի մեջ ունի հետևյալ անունը. «Եւս Աբու Աբաս Վաղիին, որի անունն էր Սմբատ իբն Աշոտ»։ Տաբարիի այս հաղորդումը շատ արժեքավոր է հատկապես այն իմաստով, որ Սմբատին ուղղակիորեն կապում է Աշոտի հետ, որն անշուշտ Աշոտ Բագրատունին է։ Միաժամանակ պարզվում է, որ երբ Սմբատի որդի Սահլը արդեն գլխավոր դերակատար էր ողջ Աղվանքում, դեռևս կենդանի

---

24 Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյցի», էջ 105.

25 Թ. Արծրունի, էջ 310։

*էր հայրը, և հավանաբար, որպես տոհմապետ ու արդեն հասակավոր մարդ, նստած էր ոստան Շաքիում։*

**Սահլ Սմբատյան**, *որդի և հաջորդ Սմբատ իշխանի։ Այս նշանավոր քաղաքական գործչի մասին բազմաթիվ հիշատակություններ են պահպանվել արաբ և հայ մատենագրության մեջ, որովհետև նրա գործունեության ժամանակամիջոցը զուգադիպել է Ատրպատականի նշանավոր աղանդավորական-ապստամբական շարժման և նրա ղեկավար Բաբեկի ձերբակալման հետ։*

*Սահլի մասին հնագույն տեղեկություն հաղորդողը Մ. Կաղանկատվացին է, ըստ որի 821 թ. բարոյալքված արաբական մի գունդ գաղտնաբար դուրս գալով Պարտավից, ավարի ու թալանի է ենթարկում Ամարասի գավառը և 1000-ի չափ գերիներ քշելով՝ գալիս ամրանում է Շիկաքար կոչվող վայրում. այս լուրն ստանալով, «Արի եւ շքեղատեսակն Սահղի Սմբատեան Եռանշահիկն» իր եղբայրների հետ զորքի գլուխն անցած, վաղ առավոտյան հարձակվում է արաբների վրա, ջարդում և ցիրուցան է անում նրանց ու ազատում է գերիներին*[26]*։*

*Հաջորդ հիշատակությունը Սահլի մասին հետևյալն է. արաբական աղբյուրների տեղեկությունների վրա հիմնված՝ Մարկվարտը հաղորդում է, որ շուրջ 835 թ., երբ Հայաստանի նոր արաբական կառավարիչ նշանակված Սամարղանդին հասավ իր պաշտոնատեղը, տեսավ, որ Սահլ Սմբատյանը Առանում ապստամբել էր արաբների դեմ և երկրի փաստական իշխանությունն իր ձեռքին էր։ Սամարղանդին արշավեց Սահլի վրա, բայց վերջինս գիշերային մի հարձակումով ջարդեց արաբական զորքը*[27]*։ Հավանաբար այս նույն դեպքի նկարագրությունն է, թվականի փոքր տարբերությամբ, որ պահպանվել է Կաղանկատվացու երկի տպագրությունից դուրս մնացած հատվածի հետևյալ մասում. «Իսկ երկու ։Ճ2Զ։ թուոյն Հայոց (837) ։Բժ։-ան ։Ի։ (12 հազար) հեծելոց յանկարծահաս ելեալ ի Բախտատա արշաւէին երկիրս Աղուանից։ Անդ ակն ի վերայ հարեալ Սահլի Սմբատեան, ...գործակից կալեալ զմեծ նահատակն Գէորքիոս, դիմէ ի վերայ որպէս արծուի խոյացեալ ի տկար թռչունս, այսր անդր ցրուեալ տապաստ դաշտայն արկեալ վարէր։ Եւ ի նոյն ամին, նոյն տէրն Սահլի Սմբատեան ձերբակալ արարեալ զապստամբն Բաբան... Զի առնու իշխանութիւն ի վերայ Հայոց, Վրաց և Աղուանից տիրել իշխանութեամբ ամենեցուն արքայաբար»*[28]*։*

*Սկզբնաղբյուրներից պարզվում է, որ Սահլը սկզբնական շրջանում բարեկամական կապեր է ունեցել Բաբեկի հետ, բայց դրությունը փոխվում է, երբ խալիֆաթը վճռական գործողություններ է ձեռնարկում Բաբեկի դեմ, ի վերջո ջարդում նրան իր Բազզ ամրոցում. խորամանկ քաղաքագետ Սահլը կողմնորոշվում է դեպի արաբները, և խաբեությամբ իր մոտ բերելով Բաբեկին, ձերբակալում ու հանձնում է Աֆշին զորավարին։ Այս դեպքերն իրենց արձագանքն*

---

*26 Մ. Կաղանկատվացի, էջ 374։ Պատմագիրն այս վայրը դնում է Մեծիրանց սահմանի մեջ։ Մեծիրանքը Խաչեն գավառի մի մասն էր, ուր մինչև այժմ էլ Գանձասարի վանքի դեմ կանգուն է Մեծիրանից սբ. Հակոբ վանքը՝ բազմաթիվ արձանագրություններով։ Այժմ Շիկաքար բերդի ավերակները գտնվում են Ստեփանակերտի շրջանի Քարագլուխ գյուղի կողքին, մի անմատչելի քերծի գլխին, որը կոչվում է Շիկաքար. բերդի և գյուղի շրջապատում կան գյուղատեղի և հին գերեզմանատների մնացորդներ՝ XIII դարի արձանագրություններով։*

*27 Հ. Մարկվարտ, նշվ. աշխ., էջ 50 և 56։*

*28 «Արարատ», 1897, ապրիլ, էջ 162։*

*են գտել արաբացի և հայ շատ պատմագիրների մոտ։ Վերևում բերված Կաղանկատվացու հատվածի մեջ արդեն տեսանք այդ եղելության արձագանքն ու շարժառիթը (ստանալ իշխանաց իշխանի տիտղոս և Բաբեկին բռնելու համար նշանակված գլխագինը)։ Վարդան պատմիչը գրում է.* «Սահլ որդի Սմբատայ ըմբռնէ զԲաբան եւ առնու յԱփշնէն պարգեւս հազարից հազար կշիռ արծաթոյ եւ այլ եւս հարիւր հազար առնու ի նմանէ»[29]: *Արաբացի գրողներից շատերն են անդրադարձել Բաբեկի շարժմանը և այդ առիթով էլ Սահլի խաղացած դերին։ Նրանց մոտ Սահլի գործունեության շարժառիթները տարբեր կերպ են բացատրված. ոմանք այն վերագրել են քաղաքական և մյուսները՝ զուտ անձնական վրեժխնդրական դրդապատճառների։ Անշուշտ քաղաքականը՝ երկրի ազատագրումը արաբական լծից, ժամանակի հասունացած հարցն էր և գլխավորը, բայց և անձնական շարժառիթների մասին սկզբնաղբյուրներում կան հետաքրքրական մանրամասնություններ, որոնք պարզում են Սահլի ինքնության, նրա տիրույթի տեղադրության ու սահմանների հարցերը։ Այս տեսակետից ուշագրավ է, հատկապես, ալ-Մակդիսիի հաղորդումը, ըստ որի երբ Բաբեկը պարտվեց իր Բաղղ ամրոցում՝ ծպտվեց վաճառականի զգեստով և փախավ իր կնոջ և որդիների հետ դեպի Հայաստան.* «Բայց Սահլ իբն Սունբատը, քրիստոնյա մեկը հայկական պատրիկներից, ճանաչեց նրան, որովհետև նա դրանից առաջ գերի էր եղել Բաբեկի մոտ...». «Այս Սահլը ձերբակալեց Բաբեկին և առաքեց ալ-Աֆշինի մոտ, որովհետև ալ-Մուտասիմը 2 միլիոն դիրհեմ էր նշանակել այն մարդուն, որը կբերի Բաբեկին կենդանի և մեկ միլիոն այն մարդուն, որ կբերի նրա գլուխը, այդ պատճառով էլ Սահլ իբն Սունբատին բերեցին երկու միլիոն դիրհեմ և արտոնեցին նրան կառավարիչներ նշանակել իր տիրույթի մեջ»[30]: *Իսկ Մասուդին հաղորդում է, որ Աֆշինը* «իբն Սունբատի դրությունը շատ բարձրացրեց, նվիրեց թանկարժեք իրեր, հագցրեց պատվավոր զգեստներ և թագ»[31]:

*Այս հաղորդումներից իմացվում է, որ Սահլը քրիստոնյա էր և մեկը հայ պատրիկներից (իշխաններից) և Բաբեկին ձերբակալելուց հետո վարձատրվեց դրամով ու կարգվեց իշխանաց իշխան։*

*Նրա տիրույթի հարավ-արևելյան սահմանի մասին էլ մի տեղեկություն կա Աբու Խալիֆ Դինավարի մոտ, ըստ որի երբ իր պարտությունից հետո Բաբեկը փախավ Հայաստան՝ ռումերի երկիրը գնալու համար, բանտարկվեց, հենց որ անցավ Արաքս գետը.* «Երբ Բաբեկը անցավ Արաքս գետը, դեպի նրան ուղղվեց Սահլ Իբն Սունբատը, երկրամասի կառավարիչը»[32]:

*Մասուդին նույնպես Բաբեկի ձերբակալման վայրը համարում է Սահլի տիրույթը։ Նկարագրելով Բաբեկի փախուստը, նա ասում է. «Նրանք՝ փախստականները հասան մի տեղ, որը հայ պատրիկներից մեկի՝ Սահլ իբն Սունբատի տիրույթն էր և կանգ առան մի աղբյուրի մոտ»[33]։ Այս նույն դեպքի մասին Աբու*

---

29 *Վ. Բարձրբերդցի, էջ 109։*

30 *«Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին», հավաքեց և թարգմանեց Բագրատ Խալաթյանցը, Վիեննա, 1919, էջ 92։*

31 Н. А. Караулов, *նշվ. աշխ.*, вып. XXXVIII, *էջ 92։*

32 Зия Буниатов, Азербайджан в VII—IX вв., Баку, 1965, *էջ 332։*

33 *նույն տեղում, էջ 325։*

Ցարաջի մոտ կարդում ենք. «Նրան (Բաբեկին) ճանաչեց Սահլ իբն Սունբատը՝ հայ պատրիկը և վերցրեց գերի»[34]։

Տաբարին ևս հիշատակություններ ունի Բաբեկի ձերբակալման վայրի մասին. հայտնում է, որ նա ցանկանում էր մտնել Հայաստան, որ Աֆշինը նամակ է գրում Հայաստանի իշխաններին և հայտնում. «Բաբեկը մի քանի մարդկանցով փախել է և ուղղվել դեպի Հայաստանի կողմերը»։ Մի այլ դեպքում, երբ խոսում է նրա թաքնված վայրի մասին, ասում է, որ այդ ձորը «մի ծայրով Հայաստանի մեջ էր և մյուսով՝ Ատրպատականի»[35]։

Այս փաստերը հաստատում են, որ Բաբեկը Թալիշի լեռների իր Բաղղ ամրոցից փախչելով և Արաքսն անցնելով Փայտակարանի հարավային հատվածում, մտել է Սահլի տիրույթը և այդտեղ էլ ձերբակալվել։ Կա նաև մի այլ հանգամանք, որն ավելի որոշակի է դարձնում հարցը. Բաբեկը, վստահելով Սահլին, նրան հանձնվելիս սլայման է դնում, որ իր հետ գտնվող Աբդալլահ եղբայրը մի ուրիշ տեղ թաքցվի (որպեսզի վտանգի դեպքում մեկն ու մեկը փրկվի)։ Աբդալլահին Սահլը ուղարկում է Փայտակարանի տեր Ստեփանոս Աբլասադի քրոջ որդի Եսայի Ապու-Մուսեի մոտ, այսինքն Քթիշ բերդը (գտնըվում է Լեռնային Ղարաբաղի Տումի և Տող գյուղերի արանքում)։ Աբդալլահը նույնպես ձերբակալվում է և հանձնվում Աֆշինին։ Տեղագրական այս ցուցումները ապացուցում են, որ այս դեպքերի ժամանակ Փայտակարանի մի մասը արդեն գտնվում էր Սահլի իշխանության տակ և մյուս մասի տերն էր Ստեփանոսը, իսկ Արցախին տիրում էր Եսայի Ապու-Մուսեն, որը տեր դարձավ իր աններորդու երկրամասին, վերջինիս դավաճանական սպանությունից հետո։

Այսպիսով Բաբեկի վերջին օրերի հետ կապված բոլոր դեպքերը տեղի են ունեցել Փայտակարանի սահմաններում և կապված են հայ իշխանների հետ. աղբյուրների մեջ այդ երկրամասում ոչ մի այլազգի իշխան չի հիշատակված, իսկ արաբ հեղինակների գործածած Հայաստան անունը նույնպես հասկանալի է՝ խալիֆայության վարչական բաժանմամբ ամբողջ Աղվանքը, Վրաստանի մի մասը և արևելյան Հայաստանը մի միավոր էր և կոչվում էր Արմենիա. և արաբ հեղինակները միշտ այդ անունն են գործածում (քիչ դեպքերում գործածվում է նաև Առան անունը, այն էլ միայն նեղ իմաստով՝ Պարտավի շրջակայքի համար)։ Այս բոլորից կարելի է եզրակացնել, որ Բաբեկը Արմենիա-Աղվանքի վրայով, Կուրի ձախ շրջաններով (որը Սահլի բուն տիրույթն էր), ձգտում է հասնել Վրաստան և հանձնվել Բյուզանդիային։

Սահլի մասին ունեցած մեր հնագույն տեղեկություններից իսկ երևում է, որ նա մինչև Բաբեկի ձերբակալման համար ստացած իշխանաց իշխան կոչումը Աղվանքի փաստական տերն էր։ Իսկ աղբյուրների այն հաղորդումը, որ նա Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի տերն էր, պետք է հասկանալ ոչ բառացիորեն, քանի որ հենց այդ ժամանակներում թե՛ Հայաստանում և թե՛ Վրաստանում կային ուրիշ իշխանաց իշխաններ։ Աղվանքն այդ ժամանակ իրականում երեք էթնիկական և վարչական միավորներից էր բաղկացած. Աղվանքի արևմտյան մասերը պատկանում էին Վրաստանին (որտեղից էլ Արչիլ թագավորը կալվածքներ տվեց եկվոր Բագրատունիներին՝ Սահլի հայր Սմբատին և

34 Նույն տեղում, էջ 324։
35 Նույն տեղում, էջ 309։

Նրա եզրայրներին), ապա բուն Աղվանքը՝ Շաքե կենտրոնով և, վերջապես, Աղվանք Հայոցը. այս առումով էլ Սահլը կարող էր համարվել Հայոց, Վրաց և Աղվանից իշխանաց իշխան։

Սահլի մասին վերջին տեղեկությունները վերաբերում են արդեն Բուղայի ժամանակներին։ Այդ դաժանաբարո զորապետը, որն Անդրկովկաս էր ուղարկվել ճնշելու խալիֆաթի դեմ կազմակերպվող ապստամբությունները, միջոցների առաջ կանգ չէր առնում տեղական նշանավոր իշխաններին ոչնչացնելու համար։ Նրա ձերբակալած և անվերադարձ կերպով Բաղդադ քշած իշխանների մեջ էր նաև Սահլը, որը մի 15 տարի առաջ այնքան մեծ ծառայություն էր մատուցել խալիֆաթին և առատորեն վարձատրվել։ Թ. Արծրունին Բաղդադ քշված իշխաններին թվարկելիս նշում է նաև Սահլին. «Եւ Սահլ Սմբատայ որդի, Շաքէոյ տէր, որ դԲաքանն կալաւ»[36]։

Համամ-Յովհաննէս-Մուավիա թագավոր: Սահլին հաջորդում է նրա որդի Համամը. հայկական աղբյուրներում նա հիշատակվում է Համամ և Յովհաննես անուններով, իսկ արաբականում՝ Մուավիե։ Հայ իշխանական տների, մանավանդ Բագրատունիների մեջ երկանուն անձեր պակաս չեն (օրինակ՝ Հովհաննես-Սմբատ և ուրիշներ), ինչ վերաբերում է Մուավիա անվանը, ապա Մարկվարտն ու Ադոնցը այն համարում են արաբական դժվար ընթերցվող և դյուրությամբ աղավաղվող տառադարձության հետևանք, դրան որպես ապացույց հիշատակելով, որ մինչ Տաբարիի մոտ Մուավիա է կարդացվում, Հաուկալի մոտ՝ Համային ձևն ունի[37], իսկ Իբն-ալ-Ասիրը՝ Մուավիա և «Առանի պատրիկ» է կոչում[38]։

Անկախ սրանցից հնարավոր է նաև, որ արաբացիները Համամ-Հովհաննեսին հայերենից զատ արաբական անունով կոչեին, ճիշտ այնպես, ինչպես Համամի թոռ Իշխանիկ թագավորին նրանք անվանում էին Աբու Աբդ ալ-Մալիք։

Համամ-Մուավիայի մասին առաջին տեղեկությունները վերաբերում են 837 թ.։ Բաբեկին ձերբակալելուց հետո Սահլը նրան ուղարկում է Աֆշինի մոտ, Բաբեկին ուղեկցող պահակախմբի մեջ է նաև Մուավիան, որը ստանում է նշանակված վարձատրությունը։ Այդ մասին նշում է Տաբարին. «Սահլը ուղարկեց իր որդի Մուավիային Բաբեկի հետ Աֆշինի մոտ, որը հրամայեց տալ Մուավիային հարյուր հազար դիրհեմ, և ուղղափառների տիրոջ անունից մեկ միլիոն դիրհեմ Սահլի համար, նաև թանկարժեք քարերով ընդելուզված գոտի և պատրիկի թագ»[39]։

Վերևում մեջ բերված Կաղանկատվացու նորահայտ հատվածը, որը, ինչպես տեսանք, Սահլ Սմբատյանի գործունեության և նրա տերանց տեր նշանակվելուն էր վերաբերում, վերջանում է 838 թ. նշումով՝ Համամ-Հովհաննեսին վերաբերող մի այսպիսի տեղեկությամբ. «Ի սոյն ամի տէրանց տէրն Յովհաննէս, որ Հայոց, Վրաց եւ Աղուանից եղեւ տէր խնդրեաց յարքունեացն կըրկին անգամ զԲուլխար Խոյտա Փատգոս երիցս այսոցիկ աշխարհաց»[40]:

36 Թ. Արծրունի, էջ 310։

37 Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 130։

38 Ибн-ал-Асир, Тарих-ал-Камил, Баку, 1940, էջ 56։

39 З. Буниатов, նշվ. աշխ., էջ 317։

40 «Արարատ», 1897, ապրիլ, էջ 162—163։ Այդ հատվածն այժմ առնված է «Պատմության» աշխարհաբար թարգմանության մեջ (Երևան, 1969, էջ 258—259)։

*Այս տեղեկությունը ճիշտ լինել չի կարող, որովհետև այդ թվականին այդ կոչումը շնորհվեց Համամի հորը՝ Սահլին, և միայն նրա Բաղդադ աքսորվելուց և մահից հետո Համամը կարող էր դառնալ տերանց տեր՝ հետևաբար այդ հատվածի մեջ կամ թվականն է շփոթված և կամ ամբողջ հատվածը հետագա լավելացում է։ Մեր ենթադրությունը հաստատվում է Արցախի Մեծիրանց վանքում պահպանված մի խաչքարի արձանագրությամբ, որն ունի 853 թ.։ Արձանագրության մեջ ասված է, որ խաչքարը կանգնեցվել է «ի ժամանակս Յովաննիսի, Աղուանից իշխանի»։ Հովհաննեսն անշուշտ Համամն է և միայն իշխան է կոչված։*

*Համամ-Մուավիայի մասին հաջորդ տեղեկությունը վերաբերում է արդեն Բուղայի ոստիկան եղած ժամանակներին՝ 852—855 թթ., երբ Բուղան իր երեք տարվա արյունոտ գործունեությունն ամփոփում էր տեղական իշխաններից շատերին ձերբակալելով ու իր հետ Բաղդադ տանելով։ Այդ բռնված իշխանների ցանկի մեջ երևան է գալիս նաև Մուավիայի անունը։ Այս դեպքը հիշատակել են մեր մի քանի մատենագիրները[41]։ Արաբ մատենագիր Տաբարին այդ դեպքերի մեջ հիշատակում է նաև Մուավիայի անունը. ահա այդ հատվածը.* «Ինքն Բուղան արշավեց Իսա իբն Յուսուֆի, Ստեփանոսի Քրոջ որդու վերա, որ գտնւում էր Փայտակարանի Քբիշ ամրոցում. Բուղան պատերազմեց իշխանի հետ, առաւ ամրոցը, ձերբակալեց և գերեց նորա որդուն, հօրը, ևս Աբու Աբաս Վագիին, որի անունն էր Սմբատ իբն Աշոտ, նորա հետ միասին Աղվանից իշխան Մուավիա իբն Սահլ իբն Սմբատն, նաև Ատրներսեհ իբն Իսահակ խաչինեցին»[42]։

*Այսպիսով, ուրեմն, Համամի տոհմի երեք անդամներն էլ գերվել են. նրա պապ և տոհմի հիմնադիր Սմբատը (այդ ժամանակ ծեր մարդ պիտի լիներ), հայրը՝ Սահլը և ինքը՝ Համամ-Մուավիան։ Քանի որ հետագայում Համամը իշխանաց իշխան և թագավոր կոչվեց, պետք է ենթադրել, ուրեմն, որ Բաղդադ տանելուց հետո նրա պապն ու հայրը զոհվել են, իսկ ինքը, նշանակվելով նրանց իշխանության ժառանգ, վերադարձել է հայրենիք՝ մոտավորապես 855 թ.։ Գերի նախարարների մասին հայ աղբյուրների մեջ Մուավիայի անունը չի հիշատակված, Թ. Արծրունին Աղվանից երեք իշխաններ է թվարկում. «Ատրներսեհ Աղուանից իշխան, Եսայի Ապումուսէ եւ Սահլ Սմբատայ որդի Շաքէոյ տէր, որ զԲաբանն կալաւ»[43]։*

*Բուղայի ոստիկանության ժամանակներին է վերագրվում Համամի կյանքի մի ողբերգական գործողությունը՝ այն, որ նա հարկադրված «հրամանաւ իսմայելեան բռնաւորին», սպանել է իր հարազատ եղբորը. այս ոճրի շարժառիթները թեև չեն նշել աղբյուրները (ըստ երևույթին Համամի դրական գործունեությունը ստվերի տակ չձգելու համար), բայց պիտի ենթադրել, որ դա եղել է քաղաքական նպատակներով։ Կաղանկատվացին այդ մասին գրում է.* «Եւ նոյն ինքն Համամ սակս առ աստուած մեծապէս յանցանացն. որ վասն սնոտի այսր կենացս զպարտ արեան եղբօրն ժողովեաց յանձն իւր...»[44]։ *Այս ոճիրը իր կնիքն է դրել Համամի ողջ գործունեության վրա, և նա, որպես ոչ միայն քաղա-*

41 Հ. Դրասխանակերտցի, էջ 127։ Ասողիկ, էջ 107։

42 Բ. Խալաթյանց, Արաբացի մատենագիրներ, էջ 101։

43 Թ. Արծրունի, էջ 310։

44 Մ. Կաղանկատվացի, էջ 383։

*քական, այլև մտածող ու գրականությամբ զբաղվող անձնավորություն՝ աշխատել է իր ժամանակին հատուկ միջոցներով քավել հանցանքի ծանրությունը և հայ մատենագիրների կողմից արժանացել է «բարեպաշտ» կոչումին։ Իսկ Կաղանկատվացին մեջ բերված վերի տողերից հետո ավելացնում է՝* «...մեծագոյն բարեգործութիւնս առ Եկեղեցիս եւ առ ամենայն կարօտեալս եւ չքաւորս առատագուարբ անսպառ կատարէր»[45]։ *Այդ էլ քիչ է, Համամը, որպես մտածող և գրչի մարդ, չի խորշել նույնիսկ իր իշխանական բարձր դրության պայմաններում իր գրական գործի մեջ էլ անդրադառնալու այդ ծանր հանցանքին և թողության խնդրելու. հայտնի է նրա նշանավոր շարականը, որի մեջ կան հետևյալ տողերը (բերում ենք կրճատումներով).*

Հայր երկնաւոր... աղաչեմ զՔեզ. ներեա յանցանաց իմոց...
Արք անօրէնք կոչեցին զիս հաղորդիլ արեան մահու...
Մեծ են յանցանքն իմ. Տէր, զոր գործեցի յահէ մահու.
Հրամանաւ իսմայէլեան բռնաւորին Եւազեցի հեղուլ զարիւն եղբօրն....
Աստուած ապաւէն . . . . յարնէ փրկեա զիս...
Մեղայ, Տէր մեղայ....[46]։

*Հինգ տնից բաղկացած այս շարականի սկզբնատառերը վերից վար հոդում են Համամ անունը։*

*Վերջերս Աղդամի շրջանի Սոֆուլու գյուղի (հին Տիգրանակերտ քաղաքի) ավերակներում հայտնաբերված մի գերեզմանաքարի տապանագիրը նույնպես առնչվում է Համամի գործած ոճրի հետ, միաժամանակ մատնացույց անելով սպանված եղբոր թաղման վայրը (հին Պարտավ քաղաքից ոչ հեռու) և ապա պարզում, որ Համամը բացի սպանվածից ունեցել է նաև Փիլիպէ և Սնպատ անունով եղբայրներ, որոնց մասին այլուստ տեղեկություններ չկան. ահա այդ արձանագրությունը.*

1. Այս գիր դամպանի կա........ եղբաւր Համամ իշխանի
2. Եւ տն Փղիպէի եւ Սնպատա...............եւ զրկ
3. Եալ ի նուռ նասակէ ելա յաշխարհէս. դառն թողի սուգ զգրիս զայս
4. Մի ոք իշխեսցէ մերձենալ ի սմա նզովեալ եղիցի ի Քէ այ

*Բացի վերոհիշյալ շարականից Համամին են վերագրվում մի շարք գիտական և բանաստեղծական երկեր, որոնց քննությունը վեր է այս հոդվածի նպատակներից (դրանցով զբաղվել են այլ բանասերներ)*[47]*։ Բայց դրանցից հատկապես մեկը կարևոր է, որը ցույց է տալիս Համամի բազմազան գիտելիքների ու հետաքրքրությունների շրջանակը. դա Այրիվանեցու հետևյալ հիշատակությունն է.* «Համամ, որ եւ Յովհաննէս Բագրատունի, Մեկնեաց զառակսն եւ եդ զվերջի դուրզայսն ի գլուխ սաղմոսացն»[48]։

*Համամը որպես քաղաքական դեմք իր ժամանակին ազդեցիկ դեր ուներ թե՛ արաբ կառավարիչների և թե՛ հայկական արքունիքում. երբ Ափշին ոստի-*

---

[45] *Նույն տեղում, էջ 383։*

[46] *Ա մ ա տ ո ւ ն ի Ս ա հ ա կ վ ա ր դ., Հին և նոր պարականոն կամ անվավեր շարականներ, Վաղարշապատ, 1911, էջ 163։*

[47] *Կ. Կ ո ս տ ա ն յ ա ն ց, Համամ Արևելցի, Վաղարշապատ, 1896։ Հ. Ա ճ ա ռ յ ա ն, Անձնանունների բառարան, հատ. Գ, Երևան, 1946, էջ 23։ Ա. Շ. Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն, Աղվանից աշխարհի գրականության հարցերի շուրջը, Երևան, 1966, էջ 181։*

[48] *Մ խ ի թ ա ր  Ա յ ր ի վ ա ն ե ց ի, Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860, էջ 55։*

կանի և Բագրատունի Սմբատ թագավորի մեջ գժտություն էր առաջացել, Գևորգ Բ Գառնեցի կաթողիկոսը փորձեց հաշտեցնել նրանց, բայց ձերբակալվեց Աֆշինի կողմից և տարվեց Պարտավ. այն ժամանակ հայ եկեղեցին և իշխանները նրա համար նշանակված փրկանքի գումարն ուղարկում են Համամին, որն իր կողմից ևս նվերներ ավելացնելով, հաջողեցնում է կաթողիկոսի ազատման գործը. այս դեպքը, որը տեղի է ունեցել 893 թ., հիշատակված է մեր բազմաթիվ մատենագիրների կողմից։ Հիշատակենք միայն Աղվանքի պատմիչի գրածը.

«Եւ նոյն ինքն Համամ... զմեծ հայրապետն Հայոց Գէորգ յանօրէն տաճկաց կապարանէն բազմաբաշխ գանձիւք տար արձակել»[49]։ Ակադ. Ա. Հովհաննիսյանը վերջերս գիտական շրջանառության մեջ դրեց ձեռագրական մի հետաքրքիր տվյալ՝ Համամ-Հովհաննեսին վերաբերող. Մատենադարանի № 5128 ձեռագրի մեջ Համամին վերագրված «Յաղագս մեկնութեան ալելուեայ ասելոյն» գրվածքի վերջում արտագրողը հայտնել է, որ գրվածքի հեղինակն է «մեծ վարդապետն Հայոց Համամ-Յոհաննէս անօծող թագաւորին Աշոտոյ Բագրատունւոյն»[50] (արտագրությունը XVII դարի է, բայց տեղեկությունն անշուշտ քաղված է մի ավելի հին աղբյուրից)։ Այս վկայության ամենաուշագրավ կողմն այն է, որ Համամը կոչվել է Աշոտին օծող։ Մի ուրիշ նման երևույթ մեր Բագրատունի թագավորների և Դերբենդի թագավորի համար հիշատակում է Մատթեոս Ուռհայեցին։ Ըստ նրա Աշոտ Գ-ի կողմից 961 թ. Անին մայրաքաղաք օծելու հանդիսություններին հրավիրված են եղել Աղվանից կաթողիկոսը իր քառասուն եպիսկոպոսներով և նրանց թագավոր Փիլիպպոսը։ Այդ նույն տեղեկությունը վերագրելով Գագիկին, Սմբատ Սպարապետը գրում է. «Եւ առաքեալ դեսպան առ կաթողիկոսն Աղուանից տէր Յովհաննէս եւ առ թագաւորն նոցա Փիլիպպէ, կոչեցին գալ ի յօծումն թագաւորին Գագկայ, որոց եկեալ քառասուն եպիսկոպոսօք եւ բազում իշխանօք եւ միաբանեալ օծեցին զԳագիկ թագաւոր Հայոց»[51]։ Այս հաղորդումների իմաստն այն է, որ Աղվանից թագավորները հրավիրված են եղել Անի՝ թագավորների օծման հանդեսներին մասնակցելու համար, այլ ոչ թե իրենք օծողներ են, դրա իրավունքը վերապահված էր կաթողիկոսներին միայն, և արդեն ստույգ հիշատակություններ կան այն մասին, որ Աշոտ Բագրատունուն օծել է Գևորգ Բ Գառնեցի կաթողիկոսը[52]։

Համամի թագ ստանալու ժամանակի վերաբերյալ հաստատ թվական չկա նշված. Հ. Աճառյանը կարծում է, որ Գևորգ կաթողիկոսին ազատելու ժամանակ Համամը արդեն թագավոր էր (ասել է 893 թ. առաջ)[53]։ Ն. Ադոնցը 893 թ. հետո է համարում Համամի թագավոր դառնալը[54]։ Հ. Դրասխանակերտցին, մանրամասն նկարագրելով կաթողիկոսին փրկագնելու պարագան, Համամին իշխան է անվանում. «Վաղվաղակի առաքեցաք ըստ հրամանի արքայի Սմբատայ առ մեծ իշխանն Արևելից Համամ»[55]։

49 Մ. Կաղանկատվացի, էջ 383։ Ստ. Օրբելյան, էջ 281, և ուրիշներ։

50 Աշոտ Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք Ա, Երևան, 1957, էջ 121։

51 «Սմբատայ Սպարապետի Տարեգիրք», Վենետիկ, 1956, էջ 2։

52 Հ. Դրասխանակերտցի, էջ 139։ Ստ. Օրբելյան, էջ 176։

53 Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Դ, էջ 25։

54 Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 131։

55 Հ. Դրասխանակերտցի, էջ 170—171։

Կաղանկատվացին, նախապես բերված հատվածի մեջ, ինչպես տեսանք, ասում է, որ Համամը և Սմբատը «ի միում ժամանակի» թագավոր դարձան, իսկ Ստ. Օրբելյանը նույն անորոշ ձևով հիշատակում է, որ ընդդեմ Սմբատ Բագրատունի թագավորի թագեր կապեցին նաև Արծրունիները, ապա վրաց բդեշխ Ատրներսեհը և ապա՝ «թագ կապեաց և Աղուանին Համամ»[56]. ամփոփելով այս բոլորը, կարող ենք ասել, որ Համամի թագավոր դառնալը ընկնում է Սմբատ Բագրատունու օծումից հետո 885—894 թթ. միջև։

Համամ թագավորի մահվան թվականը նույնպես անորոշ է. ենթադրաբար համարվում է IX դարի վերջին տարիները։ Ժամանակին Մակար եպ. Բարխուդարյանցը Ստեփանակերտի շրջանի Ավետարանոց (Ղաղանչի) գյուղի հին գերեզմանատան մեջ տեսել էր մի գերեզմանաքար, որի վրայի կիսեղծ տապանագրի մեջ հիշատակված էր Համամ թագավորի անունը. բայց թվականը նշված է եղել ՈՂ(1241) և ապա գրողի կամ քարը քաշողի անունը՝ տէր Մասուն, որից կարելի է եզրակացնել, որ տապանաքարը նորոգվել է ուշ ժամանակ[57]։

Համամ թագավորը՝ իր ժամանակի այս նշանավոր քաղաքական ու գրական գործիչը, շատ երկարակյաց է եղել. 837 թ. հոր կարգադրությամբ նա ուղեկցել է ձերբակալված Բաբեկին։ Եթե ընդունենք, որ մոտ քսան տարեկան պիտի լիներ այդ ժամանակ, ուրեմն պիտի ծնված լիներ IX դարի 10-ական թթ. և մահացած 900-ի մոտ՝ շուրջ 90 տարեկան հասակում։ Մատենագրական այս տեղեկություններով ավարտվում են մեր գիտելիքները Համամի ծագման և գործունեության վերաբերյալ։ Նրա ընտանեկան վիճակի մասին էլ մի նոր փաստ ավելացավ՝ նրա անունով գտնված տապանաքարի շնորհիվ, ըստ որի նա ունեցել է երեք եղբայր, որոնցից մեկին (որի անունը չի հիշատակված) սպանել է Համամը, իսկ մյուսներն են Փիլիպպե և Սմբատ։

Համամի եղբայր այս Սմբատին ենք վերագրում Շապուհ Բագրատունու այն հաղորդումը, ըստ որի Բագրատունի Սմբատ Ա թագավորի և ափխաղների մեջ ծագած պատերազմի ժամանակ (մոտ 908 թ.) հայոց բանակին օգնության եկած իշխանների մեջ էր նաև «իշխան յարևելից Սմբատ բազում զաւրաւք»[58] (հայ պատմագրության մեջ Հայոց Աղվանքը անվանվում է նաև Արևելից կողմանք)։

Ատրներսեհ թագավոր, որդի և հաջորդ Համամ թագավորի։ Այս թագավորի կապը իր նախորդների և հետնորդների հետ ճշտորեն գծված է դեպքերին գրեթե ժամանակակից ու գործակից Անանիա Մոկացի կաթողիկոսի (946—968) թղթի մեջ, ըստ որի. «Քանզի ունէր զաթոռ թագաւորութեան յայնժամ Իշխանակ, որդի տեառն Ատրներսեհի, թոռն երանելոյն Համամայ բարեպաշտ թագաւորին Աղուանից»[59]։ Բայց մեր հին ուսումնասիրողները, տեղյակ չլինելով այլ սկզբնաղբյուրի, անհիմն կերպով Ատրներսեհին համարել են ոչ թե Համամի որդի, այլ փեսա, որ իբր Համամը արու ժառանգ չի ունեցել, այլ միայն աղջիկ, որին ամուսնացրել է Վայկունիք-Ծար-Արցախի թագավոր Ատրներսեհի հետ, որը և հաջորդել է Համամին։ Այս վարկածի հեղինակը Մ. Բարխու-

56 Ստ. Օրբելյան, էջ 299։

57 Մ. Բարխուդարյանց, Արցախ, Բաքու, էջ 98։

58 «Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ», Էջմիածին, 1921, էջ 81։

59 Մոկացի Անանիա կաթողիկոսի ինքնագիր թուղթը, «Արարատ», 1897, էջ 131։

*դարյանցն է, որը ոչ միայն այս, այլև Փառիսոսի և Դարբանդի ու Սյունյաց բոլոր թագավորական տոհմերը խառնել է իրար, հաճախ սկզբնաղբյուրների հաղորդածները շփոթելով։ Այս Ատրներսեհ թագավորի մասին նա գրում է.* «Ատրներսեհ թագավոր Աղվանից, կին՝ դուստր Համամ թագավորի»[60], *մի այլ դեպքում՝* «Գրիգոր Բ մեծ իշխանի որդի Ատրներսեհն Բ ամուսնանում է Համամ թագավորի դստեր հետ և թագավորում Արցախի վերա՝ յուր աթոռանիստը միշտ պահելով Սիսական-ոստան Ծար ամրոցում: Ատրներսեհ թագավորն վախճանվում է, որին հաջորդում է Իշխանակ թագավորն՝ յուր որդին»[61]: *Չխոսելով տեղադրության շփոթի մասին, որը ինքնըստինքյան կպարզվի, անդրադառնանք Ատրներսեհի ինքնության խնդրին։ Ըստ Բարխուդարյանցի, այս Ատրներսեհ Բ-ն Ծար-Վայկունիքի այն իշխանական տան անդամն է, որի տոհմագրությունը ճիշտ գծել է Կաղանկատվացին, և որի մի ճյուղը Սահակ-Սևադայից սկսած հաստատվեց Փառիսոսում և հիմք դրեց այստեղի թագավորության (մանրամասնությունները՝ Փառիսոսի թագավորության բաժնում)։ Արդ, այս Համամի փեսա Ատրներսեհ Բ-ն դառնում է Սահակ-Սևադայի որդի Գրիգորի որդին. հայտնի է, որ Աշոտ Երկաթը իր փեսա Սահակ-Սևադային և որդուն՝ Գրիգորին կուրացրեց 923 թ., ուստի նրանց թոռն ու որդին այդ ժամանակ մանկահասակ պիտի լինեին, մինչդեռ Համամի որդի Ատրներսեհը հաջորդել է իր հորը առնվազն 900 թ.։ Բայց ավելի կարևորն այն է, որ մեր սկզբնաղբյուրները որևէ տվյալ չեն պահպանել Համամի դուստր ունենալու և նրա անվան մասին, մինչդեռ վրաց աղբյուրները (որոնք անծանոթ են եղել Մ. Բարխուդարյանցին), ճշտորեն հաղորդում են Համամի որդի և ժառանգ Ատրներսեհի կնոջ և՛ տոհմը, և՛ անունը։ Վախուշտի Բագրատիոնին «Կախեթի և Հերեթի պատմություն» աշխատության մեջ 917 թ. տակ գրում է. «Հիշատակ է անվան Ատրներսեհ (Ադարնասէ) պատրիկի և նրա որդու՝ Դինար թագուհու ամուսնու և նրանց որդի Իշխանիկի», իսկ 918 թ. տակ՝ «Դինար թագուհին Հերեթն հերձվածքից ուղղափառ դավանության դարձրեց»[62]։*

*Այսպես, ուրեմն, Դինարը Ատրներսեհի կինն է և նրանց որդին է Իշխանիկը, որի մասին, ինչպես կտեսնենք, հիշատակություններ կան նաև հայկական սկզբնաղբյուրներում։ «Քարթլիս ցխովրեբայի» տարբեր մասերում կան նաև հետևյալ տեղեկությունները.* «Եւ Հերեթում սկզբներում՝ մինչ Իշխանիկի թագավորությունը բոլորը հերձվածող էին: Իսկ Իշխանիկը Գուրգեն իշխանաց իշխանի քրոջ որդին էր, և նրա մայր Դինար թագուհին դարձրեց նրան ուղղափառ»[63]: «Մինչ Իշխանիկ՝ Հերեթը հերձվածող էր: Իսկ Իշխանիկը Գվարամ իշխանաց իշխանի քեռորդին էր, Գվարամի քույր Դինար թագուհին ուղղափառ դարձրեց այն Հերեթը»[64]:

*Այս տեղեկությունների հիման վրա պարզ է դառնում, որ Դինարը վրացի իշխանուհի է։ Ն. Ադոնցը ճշտել է նրա տոհմագրությունը և պարզել, որ նա Աճարայի և Ղուելի իշխանաց իշխան Գուրգենի (896—941) քույրն է. Աշոտ*

60 *Մ. Բարխուդարյանց, Պատմություն Աղվանից, հատ. Ա, էջ 188։*

61 *Նույն տեղում, էջ 132 (նրա վարկածը տեղ է գտել նաև Հ. Աճառյանի մոտ. տե՛ս Անձնանունների բառարան, հատ. Բ, Իշխանիկ անվան տակ)։*

62 *Պրոֆ. Մ ե լ ի ք ս ե թ-բ ե կ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, էջ 67, նույնը, հատ. Գ, էջ 67։*

63 *Նույն տեղում, էջ 203։*

64 *Նույն տեղում, էջ 39—40։*

Կյուրապաղատի Թոռան Թոռը[65]։ Իսկ Ղունլի երկրամասը և բերդը գտնվում էին ներկայիս Ախալցխայի շրջանում, որը վրացերեն կոչվում էր Սամցխե կամ Մեսխեթ, իսկ բերդը՝ Ղունլի. Ասողիկը հիշատակում է, որ երբ Սմբատ Բագրատունին խուսափում էր Յուսուփից, անցավ Օձունի վրայով և ապաստանեց Կունլի բերդում[66]։

Պարզելով անհերքայորեն, որ Ատրներսեհը Համամի որդին է, անդրադառնանք այժմ նրա մասին առկա տեղեկություններին՝ ժամանակագրական կարգով։

906 թ. Տաթևի վանքի օծման հանդիսություններին մասնակցելու էին եկել Հայաստանի թագավորները և մեծ նախարարները. այդտեղ էին նաև Աղվանքից եկած երեք իշխաններ՝ իրենց Սիմէոն եպիսկոպոսի հետ, դրանք են՝ Գրիգոր, Եսայի և Ատրներսեհ։ Դրանցից Եսային, անշուշտ, Եսայի Աբու-Մուսեի ժառանգներից է (ըստ ժամանակագրության՝ հավանաբար թոռը), իսկ Ատրներսեհը, անշուշտ, Համամի որդին է, որ իշխան է կոչված[67]։

908 թ. աշնանը Սմբատ Բագրատունի թագավորի կողմից Հ. Դրասխանակերտցի կաթողիկոսը պատգամավոր ուղարկվեց Յուսուփ ոստիկանի մոտ, բայց նենգաբար ձերբակալվեց, ապա փախուստ տալով, մի քանի տարի շրջագայում էր Աղվանքի, Վրաստանի ու Գուգարքի տարբեր վայրերում։ Իր այս թափառական կյանքը նկարագրելով, պատմիչ-կաթողիկոսն ասում է, որ գնաց նաև Աղվանք. «Առ թագաւորն նոցունց Ատրներսեհ, որ ըստ արևելից հիւսիսոյ կողմկասու, գի նոքա ի ժողովրդինէն մերմէ և խաշն արօտի մերոյ էին»[68]. Նշենք, որ այս հաղորդման մի կարևոր մասն էլ այս թագավորության տեղագրական ճշտումն է, որը լիովին համապատասխանում է տոհմի նախնիների կալվածքին, այսինքն՝ Շաքե-Նուխիի շրջանին։

Ն. Ադոնցը, հենվելով վրաց աղբյուրների վրա, գրում է, որ 915 թ. Կախեթի տեր Կյուրիկեն և Ափխազքի տեր Կոստանդինը միացած արշավեցին Հերեթի վրա և Ատրներսեհը ստիպված զիջեց իր երկրից որոշ մասեր, որոնց մեջ և Գավաղնի քաղաքը, որը գտնվում էր Ալազան գետի վերին հովտում, Թելավի մոտ[69]։

Ատրներսեհի և նրա տիրույթի տեղադրության վերաբերյալ մի շատ կարևոր տեղեկություն է հաղորդում արաբ մատենագիր Մասուդին, որը անձամբ եղել է Աղվանքում. «Ծանարների թագավորության մոտ,— գրում է նա,— գտնվում են շաքիները, որոնք քրիստոնեական հավատի ցեղ են, նրանց մեջ ապրում են մեծ թվով մուսուլմաններ, որոնք պարապում են առևտրով և զանազան արհեստներով. մեր այս գիրքը գրելու ժամանակ շաքիների թագավորը Ատրներսեհն էր, Համամի որդին, ինչպես անվանում են նրան»[70]։ Իսկ 958 թ., երբ հայոց կաթողիկոս Անանիան այցելեց Աղվանք, արդեն թագավոր էր Ատրներսեհի որդի Իշխանիկը։

---

65 Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 133։
66 Ասողիկ, էջ 164։
67 Ստ. Օրբելյան, էջ 234։
68 Հ. Դրասխանակերտցի, էջ 119։
69 Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 133։
70 Н. А. Караулов, նշվ. աշխ., вып. XXXVIII, էջ 57։

Սրանք են Ատրներսեհ թագավորի մասին եղած տեղեկությունները, որոնցով հստակորեն պարզվում է, որ նա Համամի որդին է և որ այդ արքայատոհմի կենտրոնն սկզբից ևեթ եղել է Շաքե-Նուխին։

Գահ բարձրանալով մոտ 900-ական թթ., Ատրներսեհը տիրել է երկրին մինչև X դարի կեսերը. նա ամուսնացած է եղել ծագումով Բագրատունի, բայց քաղկեդոնիկ դարձած ու վրացացած Դինարի հետ։ Նշելի է այս առթիվ կրոնական անդիջում պայքարի ազդեցությունը վրաց և հայ պատմիչների վրա։

Իշխանիկ թագավոր, որդի և հաջորդ Ատրներսեհ թագավորի։ Առաջին տեղեկություններն այս թագավորի մասին ըստ ժամանակի հաղորդված են վրաց աղբյուրներում, որոնք մեջ ենք բերել վերևում և, ինչպես տեսանք, վերաբերում են 917 թ.։ Դրանց մեջ արդեն տեղեկություններ կային Շաքիում Դինար թագուհու ազդեցությամբ ծայր առած քաղկեդոնական շարժման մասին։ Ատրներսեհի մահվանից հետո Դինարը իր թագավոր որդի Իշխանիկի և Աղվանից կաթողիկոսներ Սահակի ու Գագիկի գործակցությամբ սկսում է լայնորեն տարածել քաղկեդոնականությունը, որն այնքան սպառնալի կերպարանք է ընդունում, որ հայոց կաթողիկոս Անանիան բազմաթիվ նամակ-հորդորներ է գրում և անձամբ գալիս Աղվանք՝ 958 թ.։ 962 թ., երբ Գագիկ կաթողիկոսն էլ մահացել էր, գումարվում է մեծ ժողով հոգևորականների և իշխանների մասնակցությամբ. այստեղ Աղվանից կաթողիկոս է ընտրվում Վայոց ձորի Խոտակերաց վանքի միաբան ծերունի Դավիթը։ Աղվանքի այդ ժողովին ներկա է եղել նաև նրանց թագավորը, որի մասին Անանիան իր թղթի մեջ գրում է. «Տէր ծագեաց ի սիրտ հզօրացն Աղուանից ի թագաւորն. որ կոչէր Իշխանակ՝ որդի տեառն Ատրներսեհի...»[71]։ Դավանաբանական պայքարն, այսպիսով, կարծես թե ավարտվել է 962 թ. հօգուտ հայ եկեղեցու, մինչդեռ վրաց աղբյուրները հաղորդում են, որ 918 թ. Հերեթն ամբողջովին քաղկեդոնիկ է դարձել։ Անշուշտ դա կողմնակալ չափազանցություն է, բայց իրականությունն այն է, որ Շաքիի թագավորության արևմտյան (Վրաստանին մոտ գտնվող) մասերում քաղկեդոնականությունը ավելի ուժեղ էր և ապագայում այդ մասերի բնակչությունը, կրոնի միջոցով կապված լինելով վրացիներին, աստիճանաբար յուրացրեց և նրանց լեզուն ու կորցրեց ազգային իր դիմապատկերը։ Ն. Մառը քաղկեդոնականության վերաբերյալ իր աշխատության մեջ անդրադառնալով այս հարցերին, գտնում է, որ X դարում Հերեթը դարձավ քաղկեդոնական ու միացավ Կախեթին[72]։

Շաքիի թագավորության բնակչության երկնեղք այս պատկերի աղոտ հետքերը պահպանվել են մինչև մեր օրերը. բուն Նուխիի շրջանում ապրող այդ հին բնակչության հայ և ուտի հատվածները պահպանել են հայադավանությունը, իսկ Վրաստանի սահմանի մեջ գտնվող մի քանի գյուղերում (ինչպես Զենոբիանի՝ այժմ Օկտոմբերի) վրացադավան ուտիներ են, իսկ միջնադարյան հասկացողությամբ կրոնն էր որոշում ազգությունը։

Արաբական աղբյուրների մեջ կարևոր տեղեկություններ կան Արմենիա վարչական միավորի կազմի մեջ մտնող իշխանությունների կողմից արաբ պե-

71 Մոկացի Անանիա կաթողիկոսի ինքնագիր թուղթը («Արարատ», 1897, էջ 151)։ Այս թղթի մեջ շարադրված են մանրամասն տեղեկություններ դավանաբանական վեճերի մասին։ Նույնի մասին տե՛ս Ս. Օրբելյանի «Պատմության» ԾԲ գլուխը։

72 Н. Марр, Аркаун, монгольское название христиан, Петербург, 1905, էջ 67։

տությանը տրվող հարկերի չափի վերաբերյալ. մի այդպիսի հարկացուցակ ունի նաև իբն-Հաուկալը. այն կազմված է համարվում 955 թ.։ Սրա մեջ հիշատակված են տվյալներ ներկա հոդվածի մեջ ընդգրկված իշխանությունների և նրանց վճարելիք հարկի մասին. բերենք մեր նյութին առնչվող մասերը.

> «Նա Մարզուբանը համաձայնեց, որ Մուհամմադ իբն Ահմադ ալ-Ազդին
> Սարվան-շահի տերն ու քաղաքը վճարի հազար դիրհեմ.
> Շաքիի տեր Իշխանիկը, որը հայտնի է որպես Աբու Աբդալ Մալիք,
> նույնպես համաձայնության եկավ.
> Նա Մարզուբանը համաձայնեց, որ Սանհարիբը, հայտնի որպես իբն
> Սավադա, Ռուբի տերը, վճարի երեք հարյուր հազար դիրհեմ,
> ինչպես նաև տա ընծաներ.
> Համաձայնեց Խաչինի տեր Սանհարիբի հետ հարյուր հազար դիրհեմ
> և ընծաներ ու անասուններ տալ հիսուն հազար դիրհեմ արժեքով»[73]։

*Այս ցանկի չորս տիրույթներից և նրանց տերերից երեքի մասին խոսվում է ներկա աշխատության մեջ, բայց և կարիք կա որոշ պարզաբանումների, հատկապես հայ տիրողների վերաբերյալ։*

*Նախ Իշխանիկի վերաբերյալ. հետաքրքիր է, որ արաբացիք նրա համար ունեն նաև սեփական անուն և կոչում են Մալիք, որը նույնանում է մեր թագավոր բառի իմաստին։ Խիստ ուշագրավ է այն հանգամանքը, որ մյուսների վճարելիք հարկի գումարը կամ ընծաների չափը ճշտորեն սահմանված է, մինչդեռ ըստ երևույթին Իշխանիկի համար ամեն անգամ պիտի նոր համաձայնություն կնքվեր, մի հանգամանք, որը կարող է բացատրվել հարևան իշխանությունների համեմատությամբ Իշխանիկի ավելի ազատ կամ արտոնյալ դիրք ունենալով։*

*Այսպես, ուրեմն, Համամ Բագրատունու այս նշանավոր տոհմը 775 թ. հաստատվելով Շաքե-Նուխիի շրջանում, հասավ թագավորական աստիճանի և այդ կոչումով հարատևեց մինչև 962 թ., այսինքն մոտ 200 տարի*[74]։

ՀԱՄԱՄ ԲԱԳՐԱՏՈՒՆՈՒ ՏՈՀՄԸ

1. Աշոտ Բագրատունի
2. Սմբատ Բագրատունի, Շաքեի տեր, 775—852 թթ.
3. Սահլ Սմբատյան, իշխանաց իշխան, 822, 887, 852 թթ.
4. Համամ-Հովհաննես, Փիլիպպե, Սմբատ, 908 թ.
   թագավոր Աղվանքի,
   837, 852, 893 թթ.
5. Ատրներսեհ, թագավոր Շաքեի, 906, 910, 915, շուրջ 950 թթ.
   (կինն է Դինար)
6. Իշխանիկ. թագավոր Շաքեի, 950, 962 թթ.

---

*73 Օգտվում ենք Ա. Տեր-Ղևոնդյանի նորագույն թարգմանությունից. տե՛ս ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր» (հաս. գիտ.), 1969, № 2, էջ 58—59։*

*74 Արհամարհելով պատմական բոլոր սկզբնաղբյուրների տվյալները և բացահայտ իրողությունները, «Азербайджан в VII—IX вв.» (Баку. 1965) աշխատության հեղինակ Զ. Բունիաթովը, ենելով լոկ Շաքի անունով աննշան մի բնակավայրի առկայությունից Զանգեզուրում, Համամ Բագրատունու տոհմի տիրույթները Շաքի-Նուխիից տեղափոխում ու տեղադրում է Զանգեզուրում, անհարմար վիճակի մեջ դնելով և՛ իրեն, և՛ իր խմբագրին։*

## ՓԱՌԻՍՈՍԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

*Այս տոհմի ծագմանն ու հաջորդականությանը անդրադարձել է Մ. Կաղանկատվացին. համաձայն պատմագրի վկայության, տոհմի հիմնադիրն է Սյունիքի տեր Սահլի որդի Ատրներսեհը, որն ամուսնացած էր Միհրական տոհմի դուստր Սպրամի հետ[75]։ Նա շինում է Հանդի բերդը և իր ապարանքը դնում է Վայկունիք գյուղում. այնուհետև, այլ հայ իշխանների հետ, նա գերի է տարվում Պարսկաստան. 5—6 տարի մնալուց հետո փախչում, վերադառնում է ու մահանում իր տանը։ Ատրներսեհի գերի տարվելու փաստը հաստատվում է նաև հայ և արաբացի այլ հեղինակների կողմից. Թ. Արծրունին գերեվարածների իր ցանկի մեջ նրան անվանում է «Ատրներսեհ Աղվանից իշխան»[76], իբն-Մասկավան՝ «Ատրներսեհ որդի Իսահակի»[77], իսկ Տաբարին՝ «Ատրներսեհ-իբն-Իսահակ խաչանու»[78], որ է խաչենցի։*

*Համառոտակի ուրվագծենք նախ տոհմի բնաշխարհի այս տեղագրությունը. հիշատակված Հանդի բերդը և Վայկունիք գյուղը այժմյան Քելբաջարի շրջանում են. Վայկունիքը, ուր արքունական բաղանիքներ են եղել, այժմյան Իստի-սու առողջարանի մոտի գյուղն էր. որի անունով ամբողջ գավառն էլ երբեմն կոչվել է Վայկունիք։*

*Ատրներսեհն ունենում է Գրիգոր և Ապուսե անունով որդիներ. այս Գրիգորն էլ իր հերթին կառուցում է Հավախաղացի բերդը և ավելի ընդարձակում իր տիրույթը։ Տոհմի տիրույթի սահմանները ավելի ճիշտ ընկալելու համար անենք հետևյալ դիտողությունները. Սահլին Կաղանկատվացին կոչում է Սյունիքի տեր և իրավամբ, որովհետև Վայկունիքը միջին դարերում միշտ Սյունիքի մաս է համարվել և Ստ. Օրբելյանը իր ցանկերի մեջ նրա բոլոր գյուղերը Սյունիքի Սոդք գավառի վրա է թվարկել։ Ըստ երևույթին Վայկունիքը, որը նաև Նար գավառ և Ծարա երկիր է կոչվել, հենց այս շրջանից սկսած Սոդքի հետ մի ամբողջական միավոր է կազմել։ Արդեն Կաղանկատվացին է հիշում, որ Սահլը բռնությամբ գրավել էր Գեղամա երկիրը, իսկ նրա հարսը՝ Սպրամը, իր ամուսնու գերության ժամանակ. «շինէր զՆորավանս ի գաւառին Սոդէից ամենապայծառ զարդուք»[79]։ Սրանց որդի Գրիգորը Սոդքի (այժմյան Վարդենիսի) Մեծ Մազրա գյուղում կանգնեցրել է մի նշանավոր խաչքար, որի թիկունքին գրված է հետևյալ արձանագրությունը.*

> :ՅԼ:(881) թվականութեանս Հայոց. ես Գրիգոր Ատրներսեհ
> եան. Սիւնեաց եւ Աղուանից իշխան. կանգնեցի
> զսուրբ նշանս ապաւական ճաւատացելոց. որք
> երկրպագէք սուրբ խաչին Քրիստոսի զիս յաղաւթս
> յիշեսջիք:

*Տոհմի կալվածքի մի ծայրը, այսպիսով, կցվելով Սևանա լճին, մյուս ծայրով հասնում էր մինչև Հագարու գետը (հնում՝ Աղուան) և ընդգրկում այժմյան*

---

*75 Բնագրում Սահլի մասին ասված է. «Ի Տոհակայ և տէր Սիւնեաց», էջ 388. իսկ վերջերս կատարված աշխարհաբար թարգմանության մեջ «Սահլը Հայկի տոհմից էր և Սյունիքի տերը» (Երևան, 1969, էջ 266)։*

*76 Թ. Արծրունի, էջ 310։*

*77 Բ. Խալաթյանց, նշվ. աշխ., էջ 79։*

*78 Նույն տեղում, էջ 101։*

*79 Մ. Կաղանկատվացի, էջ 389։*

*Լաչինի շրջանը (հին Սյունիքի Աղահեճք գավառը, որ միջին դարերում կոչվել է նաև Քաշաթաղ և Խոժոռաբերդ), ուր Գրիգորը շինել էր, ըստ պատմիչի, Համախաղացի բերդը։ Տոհմի կալվածքը բռնում էր, ուրեմն, Լեռնային Ղարաբաղի սահմանից սկսած մինչև Սևանի ափերն ընկած տարածությունը։*

*Այս Գրիգորի հինգ որդիներից էր Սահակը, որը նաև Սևադա էր կոչվում.* «Այր Քաջ եւ յաջող, սա առհասարակ տիրեաց Դարդմանայ և Քուսայ և Փառնայ գաւառաց, այլ և աւազակապետաց Զորոյ գետոյն բովանդակ եղեւ իշխան», *— գրում է սրա մասին Մ. Կաղանկատվացին*[80]*։*

*Ահա այս Սահակ-Սևադան է, որ իր հայրենական տիրույթը ընդարձակելով՝ Սոդքի կողմից իջնում է Կուրի հովիտը և տեր դառնում ընդարձակ մի երկրամասի, փաստական հիմնադիրը դառնալով Փառիսոսի թագավորության։ Պատմիչը հաղորդում է, որ Սահակ-Սևադան նաև գիր ու գրականություն հովանավորող էր, իր պալատում դպրոց և ուսուցիչներ էր պահում. ըստ երևույթին այդ մշակութային միջավայրի արդյունքն էր XI դարի նշանավոր գիտնական և մանկավարժ Հովհաննես Սարկավագ վարդապետը, որը ծնվել էր Փառիսոսում։ Սևադան Բագրատունի թագավորության հանդեպ կենտրոնախույս դիրք բռնած նախարարներից էր. չնայած Աշոտ Երկաթ թագավորն իր փեսան էր, երկու անգամ նա ապստամբեց նրա դեմ, մինչև որ բռնվեց ու դաժանորեն կուրացվեց 923 թ.։*

*Սևադան ունենում է երկու որդիներ՝ Գրիգոր և Դավիթ։ Գրիգորը ունենում է Սևադա իշխան և Ատրներսեհ անունով որդիներ, իսկ Սևադա իշխան կոչվածը չորս զավակ՝ Հովհաննես, Գրիգոր, Ատրներսեհ և Փիլիպպե։ Սրանցից ավագը՝ Հովհաննեսը կոչվում էր նաև Սենեքերիմ. պատմիչն ասում է, որ սրան* «ընտրեաց աջն Բարձրելոյն կոչելով զնա ի թագաւորութիւն... զոր թագաւորն Պարսից մեծամեծ զարդուք պատուէ եւ տայ նմա զթագ հօր իւրոյ եւ զնորին երիվարն։ Ի նմին ամի եւ որ Յունացն էր Մագիստրոս՝ Դաւիթ կոչեցեալ անուն, թագ զարմանազան եւ ծիրանիս թագաւորական առաքէր ի պատիւ եւ ի գովեստ աստուածայաջող առն այնորիկ, որ եւ ի ձեռն հայրապետական աջոյն առնոյր զօծումն թագաւորական ի փառս Քրիստոսի»[81]։

*Այս նորահաստատ Փառիսոսի կոչված թագավորության կենտրոնատեղին Փառիսոս քաղաքն էր, իր կողքի ամուր բերդով, որ գտնվում է Շամքոր գետի վերին մասում։ Քաղաքավանն այժմ անմարդաբնակ և ավերակ է. վերջին դարերում կոչվում էր Գետաբակ և Ղալաքենդ, մինչև այժմ էլ այստեղ կան մեծ թվով հայկական հուշարձաններ։ Բերդը գտնվում է քաղաքի եզրին բարձրացող սարի գլխին և կիսավեր է. դա միջնադարյան լավ պահպանված բերդերից է, հաստահեղույս պարիսպներով և բուրգերով շրջապատված։*

*Սահակ-Սևադայի հիմնադրած իշխանությունը, մատենագրի նշած սահմաններով, մի ընդարձակ երկրամաս էր, որը ընդգրկում էր Արցախ և Ուտիք նահանգների արևմտյան բոլոր ծայրագավառները՝ սկսած առնվազն Շամքոր գետի ավազանից և հասնում Դեբետի ստորին ավազանը։ Տիրույթի հյուսիսային բնական սահմանը Կուր գետն էր։ Որ այս սահմաններն իրական են եղել՝ ապացուցում են Սևադայի և Աշոտ Երկաթի միջև տեղի ունեցած այն դեպքերը, որ կատարվեցին Զորափորում, ապա Տավուշում։*

---

80 *Նույն տեղում։*

81 *Նույն տեղում, էջ 390։*

*Նոր այս իշխանական տիրույթը Հայրենի երկրամասի՝ Սողք Վայկունիքի հետ կապված էր Փառիսոսի լեռնանցքով, որը Փառիսոս քաղաքի մոտից բարձրանալով, մտնում էր ներկայիս Կարմիրի շրջկենտրոնը և հասնում Սոդք (լեռնային այս ճանապարհը մինչև այժմ էլ գործում է և միակն է այդ շրջանների կապի համար)։*

*Փառիսոսի այս թագավորությունը վերացավ 1003 թ.։ Այդ մասին Ասողիկը գրում է.* «Յայսմ ժամանակի ՆԾԲ թուին (1003) իշխանն Փառիսոսայ, որ ի Հայկազեան ազանց բուեալ մինչեւ ցՍենեքերիմ եւ ցԳրիգոր՝ սպառեցան մահուամբ: Յորոց աշխարհս բաժանեալ հակառակութեամբ ի միջի իւրեանց արքայն Հայոց Գագիկ եւ Փատլուն՝ ամիրայն Գանձակայ»[82]:

*Փառիսոսի թագավորության հողերի մի մասի անցումը Գանձակի ամիրայությանը պատահական չէր։ Այդ ամիրայությունը խալիֆայության մեջ կիսանկախ, ապա և անկախ դարձած վարչական միավորներից մեկն էր, որը տեղավորված էր Կուրի աջ ափին և բռնում էր Ուտիք նահանգի արևելյան և Փայտակարանի արևմտյան գավառները։ Սկզբնական շրջանում արաբ ամիրաները նստում էին Սասանյանների ժամանակ շինված Պարտավ քաղաքում, բայց IX դարի կեսերին, Պարտավի ավերածությունից հետո, արաբները կառուցեցին Գանձակ քաղաքը՝ ըստ Մ. Կաղանկատվացու վկայության մոտ 846 թ.*[83]*։ Հայտնի է, որ նորաշեն նստոցում ամուր հենարան ունենալու համար Դիարբեքիրից և այլ վայրերից այստեղ բերվեցին մեծ թվով արաբ բնակիչներ։ Սակայն բնակչության մեծամասնությունը հին տեղաբնիկներն էին՝ հայեր և ուտիներ։*

*Փառիսոսի թագավորական տոհմի ծագման և հաջորդության տեսանելի պատկերը հետևյալն է.*

1. Սահլ ի Տոհակա, տէր Սյունիքի, IX դար
2. Ատրներսեհ, IX դար (կինն է՝ Սպրամ)
3. Գրիգոր, 881 թ.
4. Սահակ-Սևադա, գրավեց Գարդման-Փառիսոսը, կուրացվեց 923 թ.
5. Գրիգոր, կուրացվեց 923 թ., Դավիթ
6. Սևադա իշխան, Ատրներսեհ
7. Յովհաննես-Սենեքերիմ թագավոր, 1003 թ., Գրիգոր, Ատրներսեհ, Փիլիպպե

## КНЯЖЕСТВА АРЦАХА, ШАКИ И ПАРИСОСА В IX—X ВВ

С. Г. БАРХУДАРЯН

(Резюме)

В период разложения Арабского халифата в Армении, как и на территории других его владений, образовались полузависимые феодальные княжества. История ширакских и дзорагетских Багратидов,

82 *Ասողիկ, էջ 275։*

83 *Մ. Կաղանկատվացի, էջ 378։ Արաբ աղբյուրները Գանձակի հիմնադրումը 844 և 859 թվականներին են դնում։ Հին քաղաքը գտնվում էր ներկա Գանձակից քիչ հեռու։ Ժամանակակից Գյանջան հիմնել է Շահ Աբասը՝ 1607 թ. (սկզբնական շրջանում կոչվում էր Աբասաբադ)։*

васпураканских Арцрунидов и Сюникского царства в достаточной мере освещена в историографии. Иначе обстоит дело с Арцахом, Шаки и Парисосом—княжествами, которые образовались на территории Восточной Армении и Албании в середине IX в. и, просуществовав более одного столетия, сыграли значительную роль в политической, экономической и культурной жизни армянского народа. Перед автором статьи стояла задача собрать воедино имеющиеся об этих княжествах разбросанные скупые данные, используя также обнаруженные им ценные эпиграфические материалы. Удалось уточнить границы этих княжеств и выяснить ряд важных вопросов, связанных с деятельностью наиболее выдающихся их правителей.